# ՄԵՐ ՀԱՐԱԶԱՏ ԴՊՐՈՑ…

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ճամբարներից մեր զովասուն
Քաղաք դարձանք մենք կազդուրված,
Առվակն էր ժիր այնտեղ հոսում
Ու ողջունում մեզ գրկաբաց:

Մենք շրջեցինք ամբողջ ամառ,
Բնության մեջ հանգստացանք,
Անտառներում զով ու դալար,
Հոգով այնքա՜ն հարստացանք:

Մենք զգացինք սրտով մեր խենթ
Ողջ բնության գաղտնիքը խոր,
Ծառ բարձրացանք թիթեռի հետ,
Առվակի հետ մտանք մենք ձոր:

Ու բարձրացանք սարերն ի վեր,
Նոր աղբյուրներ գտանք զուլալ,
Գտանք այնքան նոր ծաղիկներ,
Վարդեր գտանք դեղին ու ալ:

Սիրով անցանք ամենուրեք,
Տեսանք շատ բան ու հիացանք,
Բայց, հարազատ դպրոց շքեղ,
Մենք՝ քեզ երբեք չմոռացանք:

Դու մեզ համար հարազատ մայր,
Խոսքի աղբյուր, հույզի ալիք,
Մեր սրտերին դու հուր անմար,
Իմաստության լույս բանալի:



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1960 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ




...ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



# Նախավերջինը



ՆԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Վազքահերթում տղան ամենից կրտսերն ու անփորձն էր:

Ուշադրություն...

Տղայի հետևում որոտաց ստարտային ատրճանակը: Նույն ակնթարթին վեց զույգ ոտքեր պոկվեցին ստարտային կոճղերից: Վեց վազողներ նետվեցին առաջ: Տղան իր առջև, վազքուղու վրա, չէր տեսնում որևէ մեկի: Արագ, ավելի՛ արա՛գ: Մարզադաշտում ամենքը գիտեն, պոկվելիս տղան անցնում է բոլորից: Միշտ այդպես է լինում: Եվ այն, որ նա իր առջև չէր տեսնում որևէ մեկի, մի ակնթարթ անգամ չուրախացրեց նրան: Հետևյալ պահին նրա մոտ երևաց բարձրահասակ Կարենի կապույտ մայկան: Տղան ճիգ արեց՝ «Արա՛գ, ավելի՛ արագ»: Սակայն նրա մոտ հայտնվեցին ու առաջ անցան ուրիշ մայկաներ, ուրիշ գույների... Երկրորդը, երրորդը, չորրորդը: Տղային մի պահ թվաց, թե բոլորը անցել են: Սակայն տղան իր հետևից հասնող ոտնաձայներ լսեց: Թվում էր, ուր որ է պիտի հասնեն և իր առջևից պիտի վազեն վազքահերթին մասնակցող հինգ հոգին էլ: Տղան գիտակցեց, որ դա կարող է լարել մկանները... Իսկ դա վտանգավոր է: Հետևից ոտնաձայները մոտեցան, տղան իր մոտ նկատեց Սամվելի անընդհատ շարժուն մայկայի ճերմակը, նրա լարված դեմքը... Եվս մի ակնթարթ, և իր առջևից վազում էին բոլոր հինգը, բոլոր հինգ վազողներն էլ, իրենց հետևից տանելով Սամվելի ճերմակ մայկան: Տղան հասկացավ, որ իզուր էին իր ջանքերը: Հասկացավ, որ ամեն ինչ տանուլ է տված: Ընկճվեց: Նա ցանկացավ թողնել վազքուղին: Նստարաններն աղմկում էին: Նա մի պահ լսեց այդ աղմուկը, հուսալքվեց: Ոչ թե այն բանի համար, որ իր առջևից վազում էին բոլոր հինգը, այլ որովհետև անխուսափելի էր թվում այդ: Նստարաններն աղմկում էին: Ինչպես միշտ: Հուսահատ ջղայնությամբ համակված տղան հասկացավ, որ չպետք է հանձնվել, չպետք է ընկճվել այդ ծաղրալի աղմուկի առջև, այլ պետք է ցույց տալ նրանց, որ ինքը կարող է մաքառել յուրաքանչյուր մետրի համար, մինչև վերջ: Նա ջանաց առանց երկյուղի, որ դա կարող է լինել վտանգավոր, գիտակցելով, որ վատթարագույն դեպքում կարող է կորցնել միայն այն, ինչն արդեն կորցրած էր: Դա կատաղի մի պայքար էր այն ամենի դեմ, ինչն անխուսափելի էր: Դա կատաղի մի պայքար էր այն բանի դեմ, որ առջևից պիտի վազեին բոլոր հինգը, որ ինքը պիտի քարշ գար հետևից, պիտի տաներ աղմկող նստարանների անխնա ծաղրը: Դա կատաղի մի պայքար էր ծաղրող նստարանների դեմ: Նա տագնապով նկատեց մոտեցող ավարտը: Նա կցանկանար, որ մնացած մետրերը երկարեին այնքան, որքան իրենում ուժ կլինի ոտքերի վրա մնալու համար, որքան իրենում գիտակցություն կլինի, որ պետք է վազել.



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

վազել... Առջևում, մի քանի մետրի վրա Կարենի կապույտ մայկան կտրեց սպիտակ ժապավենը: Տղան հասցրեց նկատել Հայկի կարմիր մայկան, առաջ պարզված, աչքերը խուփ դեմքը: Տղան այդ մի ակնթարթում հասցրեց նկատել, որ այդ դեմքը հանգիստ էր, զգաց, որ այդ հանգիստ դեմքը, սակայն, արտահայտում էր գերմարդկային ճիգ, մի ճիգ, որը գործադրում է մարդը հասնելու և անցնելու համար: Հետևյալ պահին նրա մոտ նկատվեց Սամվելի ճերմակ մայկան, տղան արեց վերջին ճիգը, մի ճիգ, որում մի տասնյակ մետրի վրա նա ներդրեց ամենը, ինչ մնացել էր ոտքերում, թևերում, կրծքի տակ, առաջ նետվեց ամբողջ իրանով և հազիվ պահելով ոտքերի վրա մարմինը, սրընթաց անցավ վերջին սպիտակ գիծը:

Նոր միայն նա զգաց, նոր միայն գիտակցեց, որ այնտեղ, վազքուղու վրա եղել էր մի բան, որի համար այժմ պետք է մտածեր ոչ այնպես, ինչպես միշտ: Այնտեղ վազքուղու վրա նա թողել էր Սամվելին: Թողել էր թեկուզ մի տասնորդական վայրկյան, թեկուզ մի ակնթարթ, սակայն թողել էր: Տղայի բաց բերանը, որ ագահորեն օդ էր ներս քաշում, հանկարծ լայնացավ, աչքերն արցունքոտվեցին, և տղան առաջին անգամ վազքահերթից հետո ժպտաց լիաբերան, արցունքոտ ժպիտով:

— Ես տարա...

Նա լսեց նստարանների աղմուկը: Նա դարձավ նրանց, բարձրացրեց ձեռքը և նույն ժպիտով ժըպտաց նրանց՝ նստարաններին: Վեց վազողներից գուցե միայն նա լսեց ժխորի այն թեթև ալիքը, որ անցավ նստարաններով, գուցե միայն նա հասկացավ այդ աշխույժ ժխորի իմաստը, որովհետև վեց վազողներից միայն նա կրկին թափահարեց ձեռքը ու կրկին նրանց ժպտաց բարեկամի լիաբերան ժպիտով:

Ապա նրանք, վազքահերթի վեց հոգին կանաչ դաշտի եզրով անշտապ վերադառնում էին այնտեղ, որտեղից սկսել էին վազքը:

Նստարանները համեմատաբար հանդարտվել էին:

Հայկն ասաց.

— Ես անկասկած կտանեի Կարենին, եթե՞ չսայթաքեի...

Կարենը մտահոգ էր.

«Կտանե՞ր»:

Տղան փնում էր առջևից:

— Ես տարա Սամվելին, տղայի ձայնը ամենից զիլ էր հնչում: — Ե՛ս տարա...

— Մեկին տանելը մեծ գործ չէ: Նույնիսկ, երկուսին,— սա ասում էր նա, ով եկել էր չորրորդը և հաղթել միայն երկուսին:

— Ես երրորդը եղա.— նա, ով եկել էր երրորդը և ասում էր այս խոսքը, ասում էր, որպեսզի մյուս-

ները հասկանան, որ այո, ինքը ընդունում է, որ ինքը եղել է երրորդը, որ այո, ինքը հասկանում է, որ ինչևէ, դա երկրորդը կամ առաջինը չէ։

— Սամվելն աշխատում էր ամբողջ ուժով, բայց ես տարա նրան։ Ես տարա։

Տղան ավելի ուրախ էր, քան մյուս հինգը։ Մյուս հինգը տարակուսած էին։ Եվ գրեթե գազազած՝ Հայկը հարցրեց, ջանալով դնել «դու» բառի վրա արհամարհող, ոչնչացնող մի շեշտ։

— Դո՞ւ, ինչո՞ւ ես ուրախ։

Տղան հանկարծ հասկացավ, որ իսկապես ինքն այնքան ուրախ է, որ դա նկատելի է նրանց։ Նա ասաց.

— Ես առաջ միշտ վերջինն էի լինում։

# Մեր ոսկի հյուրը

Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ոսկեմազիկ աղջկա պես
Զամբյուղն առած մրգերով լի,
Բուրումնավետ ու ժպտերես
Եկավ հյուրը մեր սիրելի։

Ո՞վ է տեսել այսպիսի հյուր,
Ի՞նքն է անա հյուրասիրում.
Տալիս է մեզ մրգեր բուռ-բուռ,
Մեկը մեկից քաղցր ու սիրուն։

Տալիս է մեզ խաղող ու դեղձ,
Տանձ ու խնձոր, դամբուլ ու նուռ,
Ձմերուկներ, սեխեր մեծ-մեծ
Բերում, փռում է ամենուր։

Անձրևները նրա հստակ
Արցունքներն են ուրախության,
Ծիածանն է դարձել պսակ
Նրա գլխին ոսկեդեղձան։

Էլ մենք ինչպե՞ս չհիանանք,
Ոսկի հյուրով մեր պանծալի...
Երանի՜ թե, երբ մեծանանք
Աշնան նման լինենք բարի։

Նրա պես միշտ շքեղ լինենք,
Առատաձեռն ու զվարթուն
Եվ ամենո՜ւր մենք ծավալենք
Լիություն ու երջանկություն։



Նկ. Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

Ստեփան Զորյան...

Դու դեռ առաջին դասարանում էիր, դեռ նոր էիր այբուբենը սովորել, երբ կարդացիր այս անունը: Հիշո՞ւմ ես պատմությունը այն փոքրիկ տղայի, որ՝ առանց ծնողների գիտության հեռախոսով մորաքրոջը տուն էր հրավիրել: Դա Զորյանի «Հեռախոսը» պատմըվածքն էր: Երրորդ դասարանում դու կարդացիր «Խաղողի այգում», «Արջը» պատմվածքները: Հետո դու սկսեցիր ավելի շատ հանդիպել Ստեփան Զորյանի անվանը, ու նա դարձավ քո սիրած գրողը: Դու փնտրեցիր և գտար քո սիրած հեղինակի գրքերը: Դրանք շատ էին ու ամեն ինչի մասին: Կլանված սկսեցիր կարդալ «Խուժան Արշոն», «Սև Սեթոն», «Անտառում», «Հեքիաթները», «Մի կյանքի պատմությունը» և ուրիշ շատ գործեր: Կարդում էիր ու ինքդ երևի չես նկատել, որ այն մաքուր հայերենը, որով հիմա խոսում ես, սովորել ես հենց այդ գրքերից, Ստեփան Զորյանից, որը քո սիրած մյուս հեղինակների հետ ո՛չ միայն քեզ լեզու սովորեցրեց, այլև կոփեց ու դաստիարակեց քո բնավորությունը:

Սակայն դու դեռ շատ պիտի կոփես քո բնավորությունը, դու դեռ պիտի կարողանաս կազմակերպել քո ժամանակը, ավելի շատ աշխատես, շատ դժվարություններ հաղթահարես, որպեսզի կարողանաս լիարժեք մարդ դառնալ: Հենց այստեղ էլ իր գրքերով քեզ նորից կօգնի Ստեփան Զորյանը: Դու դեռ չես կարդացել Զորյանի «Գրադարանի աղջիկն» ու «Հեղկոմի նախագահը», «Ցանկապատն» ու «Տխուր մարդիկ», «Խնձորի այգին» ու «Սպիտակ քաղաքը», «Պապ թագավորն» ու «Հայոց բերդը»: Դու շատ բան կսովորես նաև Զորյանի կենսագրությունից: Դեռ դպրոցական էր Ստեփան Զորյանը, երբ նրա մեջ գրող դառնալու ցանկություն առաջացավ: Նա սկսեց նույնիսկ փոքրիկ բաներ գրել: Գրում էր, բայց դրանք դեռևս գեղարվեստական գործեր չէին: Հարկավոր էր շատ կարդալ, բարձրացնել ճաշակը: Այդպես էին ասում նրան մայրը, ուսուցիչը: Եվ պատանի Ստեփանն սկսեց կարդալ: Կարդում էր օր ու գիշեր, կարդում էր մեծ հափշտակությամբ և ինչքան շատ էր կարդում, այնքան սուր էր զգում գիտելիքների պահանջը:

Նկ. Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

Հետո նա հայրենի Ղարաքիլիսայից տեղափոխվեց Թիֆլիս, հայկական սեմինարիայում սովորելու: Սովորելու փոխարեն նա մտավ աշխատանքի: Շատ դժվարություններ հաղթահարեց նա, տարբեր աշխատանքներ կատարեց, բայց իր սիրած զբաղմունքը՝ ընթերցանությունը չմոռացավ:

Այսպես նա տիրապետեց գրելու արվեստին և ինքն էլ սկսեց գրել պատմըվածքներ, որոնք տպագրվեցին հայ մամուլում, առանձին գրքով և արժանացան Թումանյանի, Տերյանի, Շիրվանզադեի և մյուսների դրվատանքին:

Ստեփան Զորյանը միայն քո և քո հասակակիցների սիրելի գրողը չէ: Զորյանին սիրում են բոլոր հայ մարդիկ, որտեղ էլ որ նրանք լինեն, ինչ հասակի էլ որ նրանք լինեն: Շատերն են պարտական Զորյանին՝ լավ, գեղեցիկ լեզու ունենալու համար, հոգեկան բարձր հատկությունների համար: Եվ այսօր բոլոր հայ մարդիկ իրենց երախտագիտության խոսքն են ասում մեծ գրողին՝ նրա ծննդյան յոթանասունամյակի առթիվ:



# ԼՌՈՒԹՅՈՒՆ

ՍՏ. ԶՈՐՅԱՆ

Ասում են՝ լռությունը ոսկի է: Չգիտեմ, ճշմարիտ է դա առհասարակ, և արդյոք ճշմարտությո՞ւն է միշտ կամ ամեն դեպքում լռությունը համարել ոսկի՝ թող պատասխանի ով կարող է:

Ես ուզում եմ պատմել միայն, թե ինչ նշանակություն ունեցավ լռությունը ամանցի Արգարի համար, երբ մի գիշեր, գյուղ վերադառնալիս, հանդիպեց ավազակի:

«Մի անգամ,— պատմում է Արգարը,— քաղաքում բան-ման առած՝ սայլով վերադառնում էի գյուղ... Դե, մեր գյուղի ճամփան, գիտեք էլ, անցնում է անտառի միջով ու էդպես գնում մի քանի վերստ: Ճամփի երկու կողմերը բարձր ծառեր են ու էնքան խիտ, որ օրը-ցերեկով անտառը մութն է լինում: Բայց՝ ինչքան էլ մութ՝ ճամփան ջոկվում է: Մի անգամ գնացողը, իմանում է ինչպես պիտի գնա:

Ճրագվառոց էր, երբ քաղաքից դուրս եկա ու մինչև հասա անտառ՝ կարգին մթնեց... Դուք մեր կողմերում չեք եղել, բայց երևի լսած կլինեք, որ մեր անտառներում գաչաղներ են լինում, պատահում է, որ դրանք, սովի՞ց, թե չարությունից, ճամփորդի առաջը կտրում են, կողոպտում: Մանավանդ մենակ ճամփորդի: Եթե փող է ունենում՝ փողն են առնում, եթե փող չի ունենում՝ շորերն են հանում: Իսկ եթե ձիով է լինում՝ ձին են առնում, սայլվորի էլ եզներն են տանում:

Մի խոսքով չի պատահում, որ մի վատ բան չանեն:

Բայց դա միշտ չի պատահում, իհարկե: Տարեկան մի հինգ-վեց անգամ: Երբ գաչաղը կուշտ է լինում, ճամփա չի կտրում, մարդու չի վնասում: Մի բախտ է ունենում, էդպես բանի չի ձեռնարկում:

Ես էլ էդպես մտածելով՝ ճամփա ընկա:

«Ամեն անգամ էս գաչաղ չի պատահի,— ասի ինքս ինձ:— Եթե էդպես լինի, էլ գեղից չպետք է դուրս գանք»:

Երբ հասա անտառ՝ «Էհ, բախտինը անիծած, բախտ ունենամ՝ մարդ չի պատահի»— մտածում եմ ու եզները քշում անխոս: Ձեն չեմ հանում, որ մարդ չիմանա, թե սայլ է գնում: Ճամփան էլ քարոտ չի, որ սայլը թխկթխկա, եզները գնում են փափուկ, ծառերն էլ թեթև խշշում են...

«Էս լավ է,— մտածում եմ:— Ծառերի խշշոցը չի թողնի, որ սայլի ձենը լսվի»:

Մոռացա ասեմ, որ լուսնյակ էլ գիշեր էր: Սայլին նստած՝ նայում եմ առաջս ու եզներին քշում ճիպոտով: Չեմ խփում, որ ճիպոտի ձենը չլսվի:

Էսպես անխոս-անձեն առաջ եմ գնում անտառամիջի ճամփով ու մտածում էի.

«Էլի բախտ ունենամ՝ անվնաս տեղ կհասնեմ։ Սատանի ականջը խուլ»։

Էս մտքի վրա եմ՝ մեկ էլ-բըր-մի ճիավոր։

Ձորից դուրս է գալիս ծառերի արանքից ու ձին քշում իմ կողմը։ Երևաց թե չէ՝ լուսնյակի լույսով ճանաչեցի դրան. մեր կողմի ղաչաղներից մեկը՝ Թևանը, հրացանը ձեռին։ Ոչ թե ուսը գցած, այլ պատրաստ բռնած...

Դրան որ տեսա էդպես՝ թուքս չորացավ։

«Ինչ թե ինձ էլ էստեղ էր հասել,— մտածում եմ։— Բախտս աղքին ինչ անեմ... Բախտի հերն անիծած»։

Մտածում եմ ու չեմ իմանում ինչ պիտի անեմ. սայլը լիքը ապրանք է, ծոցս ու գրպանս՝ լիքը փող։ Բայց մոտս զենք էլ չունեմ... Իսկ Թևանը մի աժդահա է՝ հրացանը ձեռին... մոտիկ էլ գեղ-մեղ, մարդ-մուրդ չկա, որ ճար տաս, օգնություն կանչես։

«Վատ եղավ. տեր, դու փրկես»— մտածում եմ ու էլի քշում եզներին. իբր ոչինչ...

Ես էդպես, բայց նա ձիով մոտենում է ու բարևում։

— Բարով, քեռու տղա,— ասում է ձենը պահած։

Տեսնում եմ՝ նա էլ է կամաց խոսում, որ իրեն չլսեն։ Չէ՞որ ղաչաղ է...

Ես գլխով եմ անում, իբր թե «բարով», ու լռում եմ։

Նա մոտենում է ավելի ու ձին քշում սայլի կողքից. աչքերը չորս արած նայում է, թե ինչ եմ տանում... Վախից սիրտս դողում է, բայց ինձ հանգիստ եմ պահում։ Չեմ խոսում։ Միայն էլի թեթև ճիպում եմ եզներին։

— Դե հա...

Ու ինձ էդպես է թվում, թե եզներն էլ են մի բան հասկանում և արդեն ոտքին փոխում են արագ. գուցե և ձիուց վախեցած։

Էդպես երբ էր Թևանը, ձին էս կողմից, էն կողմից ու հետևից քշելով՝ լավ նայեց-տնտղեց սայլը՝ նորից առաջ եկավ հրացանը ձեռին բռնած ու սկսեց.

— Էս, քեռու տղա, ինչ ես տանում։

— Ապրանք։

— Ի՞նչ ապրանք։

— Էնպես էլի,— ասում եմ անտարբեր։

Նա լռում է ու, հրացանն էլի պատրաստ, ձին քշում է սայլի կողքից։

— Ականցի ես։

Ես գլխով եմ անում։— Հըը... Մթամ թե՝ հա։

— Բա՞ն էիր տարել քաղաք ծախելու։

Էլի գլխով եմ անում։— Հըը...

— Ի՞նչ,— հետաքրքրվում է նա։

Ես պատասխանում եմ մի խոսքով։

— Հեչ,— ասում եմ ու եզներին քշում։

Նա հարցեր է տալիս՝ ես պատասխանում եմ մի հատիկ խոսքով. էլի էնպես անտարբեր, հանգիստ ձայնով, որ չկարծի, թե վախենում եմ։ Բայց տեսնում եմ, որ Թևանին, էդ ավազակին դուր չի գալիս, որ անտարբեր եմ խոսում կամ պատասխանում եմ մի խոսքով։ Երևում է՝ անհանգստանում է, որ ես հանգիստ եմ։

Նա էլի «հըմ» է անում, ու ձիով անցնում է սայլի էս-էն կողմը. փնչացնում է քթով իր ձիու նման. իսկ ես՝ լուռ-լուռ, բան չեմ խոսում... ուզում եմ ցույց տամ, թե շատ հանգիստ եմ... ու մինչև անգամ շվշվացնում եմ մեկ-մեկ, ձեռս տանում եմ մեջքս՝ փեշերս դզում կամ եզներին «հե» եմ անում։

Էսպես գնում ենք։ Թևանն էլի մոտենում-հայում է սայլին, մոտենում է ինձ՝ բան հարցնում։ Ես կամ գլխով եմ անում ու լռում կամ պատասխանում եմ մի խոսքով, առանց նրա երեսին նայելու։

Ու էլի գնում ենք էսպես. նա ձիով՝ հրացանը ձեռին, ես սայլի վրա՝ միայն ճիպոտով...

Այսպես ավարտեց Արզարը լռեց ու, գլուխն օրորելով, ժպտաց.

— Հետո՞,— հետաքրքրվեցի ես։— Հետո ի՞նչ եղավ։

— Ոչինչ էլ չեղավ,— նորից ժպտաց Արզարը։— Ավազակը մի քանի անգամ փորձեց էլի խոսել՝ ես լռեցի։ Հետո դես նայեց, դեն նայեց, մեկ էլ ձիու գլուխը թեքեց ու հեռացավ։

— Եվ ոչինչ էլ չվերցրե՞ց։

— Ոչ։ Բայց հետո իմացա, թե ինչու։

— Ինչո՞ւ։

— Իմ լռությունը, անտարբեր խոսելը նրան դուր չէր եկել։ Այդ հետո իմացա։ Մեր գեղացիներից մեկին ասել էր, թե էնպես էր կարծել, որ զենք ունեմ մոտս։

«Մենակ,— ասել էր,— զենք ունեցողն է էդպես պահում իրեն ու չի վախենում...»

Այնինչ մտածել էր, որ եթե ուզենար ինձ թալանել՝ անպատիժ չէր մնա։ Դրա համար հեռացել էր...

Բայց պետք է ասեմ, որ ոչ մի զենք էլ չունեի։ Միայն, նրան տեսա թե չէ, մտածեցի, որ եթե ինձ հանգիստ պահեմ ու անխոս մնամ՝ գուցե ավելի լավ լինի...

Այո, ինչպես երևում է, լռությունը երբեմն մեծ ուժ է ունենում։



Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ

Տարիներ առաջ էր, օգոստոսի մի շոգ օր:

Դիլիջանի փոստակայանում սպասում էի կառքի, որ մեկնեմ Սևան: Ինձ հետ սպասում էին և շատ ուրիշ ուղևորներ, որ ուզում էին գնալ Աղստաֆա, Ղարաքիլիսա, Գյումրի... և որովհետև մարդիկ սպասել էին չորս-հինգ ժամ՝ շատերը հոգնել էին, ձանձրացել:

— Ի՞նչ անամոթ մարդիկ են, ինչո՞ւ են այսքան սպասեցնում, — դժգոհում էին նրանք և առանձնապես փոստակայանի կառավարչի դեմ:

Բոլորից ավելի վրդովված էր մի ջահել գյումրեցի, որ անհանգիստ այս-այն կողմն էր գնում և շտապեցնում կայանի աշխատողներին, ծառայողներին, որ շուտ անեն ձիերը լծեն և իրեն շուտ տեղ հասցնեն, որովհետև շտապ գործ ունի, ուշանում է: Սակայն ծառայողներն ու վերակացուն կամ ուշք չէին դարձնում նրան կամ պատասխանում էին կիսաբերան.

— Լա՛վ... մենք մեր ժամանակը գիտենք...

— Թո՛ղ ձիանքը մի քիչ կեր ուտեն, հանգստանան...

Բայց գյումրեցին չէր հանգստանում, նույն պահանջով, հետզհետե ավելի բարկանալով, դիմում էր էլի նույն մարդկանց, և սրանք նույն պատասխանն էին տալիս նրան... միշտ հանգիստ, անշտապ խոսքերով:

Ու այդ հանգիստ խոսքերը, այդ անշտապ շարժումները հուսահատեցնում էին ուղևորներին, իսկ գյումրեցուն ոչ միայն վրդովում, այլ վայրացնում էին պարզապես, և այն աստիճան, որ նա, իրեն երկար զսպելուց հետո սկսեց հայհոյել.

— Սրիկներ, փարա կառնեք՝ ժամանակին տարեք: Խարեբաշան օրդիք...

Փոստակայանի վերակացուն, ծառայողները, կառապանները սկզբում լսում էին և լռում, ավելի շուտ՝ չլսել էին տալիս, բայց երբ գյումրեցին ձայնը բարձրացրեց և սկսեց արդեն ծանր հայհոյանքներ, կայանի ծառայողներից մեկը պահանջեց, որ ձայնը կտրի, թե չէ վատ կլինի...

— Վատ կլինի՞... Այս սպառնալիքն ավելի բորբոքեց գյումրեցուն, և նա սկսեց ավելի ծանր խոսքեր ասել նրանց... Եվ դա, իհարկե, դուր չեկավ փոստակայանի ծառայողներին, նրանք թողին իրենց քար անտարբերությունը և, բորբոքվելով, նախ խոսքերով, ապա բռունցքներով հարձակվեցին գյումրեցու վրա և սկսեցին ծեծել:

Ազատվելու համար գյումրեցին ուզեց փախչել-թաքնվել շենքում՝ չհաջողվեց, ուզեց մտնել հենց այդտեղ բակում կանգնած կառքի տակը՝ չկարողացավ, վերջը, չգիտես ինչ մտածելով, ձեռքը տարավ ծոցը և կաշվե պորտմանը հանելով՝ խփեց գետնին:

— Հորդ հոգին, աշխարհ, էսպան փարա ունեցողին էլ վարկեն...

Գյումրեցու այդ վշտացած շարժումն ու խոսքերը մոգական ազդեցություն արին: Ծեծողները իսկույն ետ կանգնեցին ամոթահար ու պատկառանքով, իսկ վերակացուն՝ մի չոր-չոր նիհար մարդ, որ անշուշտ հրահրողն էր այդ ծեծի, իր գրասենյակից դուրս գալով, ասաց ներողություն հայցող ձայնով.

— Մի՛ նեղանա, ախպե՛ր ջան, թող ձիանքը մի կուշտ ուտեն հանգստանան... Խոստանում եմ առաջին կառքը քեզ տալ... Մի՛ նեղանա... Ախր մեր գործն էլ հեշտ գործ չի... Բա մենք չե՞նք ուզում մեր ճամփորդներին ժամանակին դուլ անենք...

Երբ փոստակայանի վերակացուն նորից գնաց մտավ իր գր-



# Գողը

ՍՏ. ԶՈՐՅԱՆ



Նկ. Ա. ԲԵԲԱՐՅԱՆԻ

քասենյակը ուղևորներից մեկը՝ ճերմակող մազերով մի մարդ, գյումրեցուն կանչելով մի անկյուն, իր զարմանքը հայտնեց.

— Էդպես անզգույշ բան կանե՞ն, ա՛յ մարդ: Ես կասե՞ն ինչքան փող ունեմ... Չէ՞ որ համփին կարող են քեզ կողոպտել...

— Կողոպտե՞լ... Ո՞ւր է փող, որ կողոպտեն,— ժպտաց գյումրեցին և, պորտմանը բանալով, ցույց տվեց նրա դատարկությունը:

— Բա ինչո՞ւ էդպես արիր.— զարմացավ մարդը:

— Ինչո՞ւ... Հրա էդո՞նց ինչի վախեցնեի... ամչցնեի.— աչքերը ոլորեց գյումրեցին:

Եվ, իրոք, գյումրեցին մեծ հոգեբան էր. տեսնելով նրա ուռած պորտմանը՝ փոստակայանի աշխատողները այժմ ամոթով ու ակնածանքով էին նայում նրան: Նույնպիսի ակնածանք նկատվում էր և ուղևորներից շատերի դեմքին, իսկ վերակացուն շուտ-շուտ դուրս էր գալիս գրասենյակից՝ կրկին ու կրկին ներողություն խնդրելու...

Փողը...

*Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

# ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Նրանք քույր ու եղբայրներ են՝
Սոնան, Սուրիկն ու Սարիկը:

Հիմա արդեն մեծացել են,
Ո՞վ է ասում դեռ փոքրիկ են:

Առաջվա պես էլ չի հոգնում
Տան գործերից խեղճ մայրիկը.

Հիմա նրան շատ են օգնում
Սոնան, Սուրիկն ու Սարիկը:





# ՀՈԳԱՏԱՐ ՍՈՆԱՆ

Ժողով գնաց մայրիկը,
Տուն է եկել հայրիկը
Շատ է սոված երևի,
Ինչպե՞ս պիտի համբերի:
— Գիտե՞ս, հայրիկ, ես մի քիչ
Ճաշ եմ եփել տիկնիկիս.
Մեջը ձու կա, մեկ էլ բողկ,
Շատ է համով, ականիվ խոսք:
Նստիր, բերեմ, որ ուտես,
Սա՝ տիկնիկիս,
Սա էլ՝ քեզ...



## ԻՄԱՑԻՐ, ՈՐ ԴԺՎԱՐ Է

Փլավ ուտելն ինչ լա՛վ է,
Բայց եփելը դժվար է:

Բրինձ մաղենք՝ մաղ է պետք,
Աղը ՝քիչ է՝ աղ է պետք.
Եփելիս օջախ է պետք,
Կամ նավթ, կամ էլ ցախ է պետք.
Վա՜յ, ցամաքեց, ջուր է պետք,
Շատ է անհամ, յուղ է պետք.
Մեկն էլ պիտի հետևի,
Որ փլավը չըվառվի:
Մի քիչ փլավ որ եփենք,
Տե՛ս, թե ինչքա՜ն բան է պետք:

## ՋԵՐՄԱՉԱՓԸ

Այսօր մայրիկը գնեց
Նոր ջերմաչափ՝ մի քիչ մեծ:
— Մայրիկ ջան, ի՞նձ համար է:
— Ոչ, սենյակի համար է:
Սարիկը շատ զարմացավ,
Սենյակի՞ն էլ ջերմաչափ:

Բայց երբ մայրը խնամքով
Պատին խփեց գործիքը,
Տեսան բոլորը աչքով՝
Բարձրանում է սնդիկը:
— Հասե՛ք,— կանչեց Սարիկը.—
Գրիպ ունի սենյակը...

*Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ*

# Գիշերօթիկ դպրոցում

**Ռ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**

Համլիկը սպասում էր հայրիկին: Նա հագել էր տոնական գեղեցիկ զգեստը, մազերը խնամքով հարդարել, սպիտակ մեծ ժապավենը կապել ու սպասում էր: Շաբաթ օրերին հայրիկը աշխատանքից հետո ուղիղ իր մոտ էր գալիս ու աղջկան հյուր տանում: Համլիկը հայրիկին այնքան բան էր ունենում պատմելու, որ երեկոյան, երբ պառկում էին քնելու, չէին էլ նկատում, որ քնելու ռեժիմը խախտվել է, որ արդեն ուշ է:

Վերջապես հայրիկը եկավ, դիրեկտորից թույլտվություն խնդրեց, և նրանք դուրս եկան գիշերօթիկ դպրոցից:

—Գիտե՞ս, հայրիկ, ասաց Համլիկը,—այսօր մենք ծաղիկների սածիլներ ենք տնկել: Ո՛չ, ճիշտ չասացի,—ուղղեց նա ինքն իրեն,—և՛ սերմեր ենք ցանել, և՛ սածիլներ տնկել: Հիշո՞ւմ ես անցյալ շաբաթ, երբ եկար, մեր բակում դեռ ինչքա՜ն քարեր կային, իսկ հիմա մի հատ չի մնացել:

—Տեսա, ո՞վ է մաքրել:

—Ո՞վ, մենք: Առաջ վազում էինք բակում, ու մեկ էլ տեսար՝ դը՛խկ, գետին էինք ընկնում: Հիմա հարթ է ու սիրուն: Մեր բակն է, չէ՞, ուրեմն՝ մենք էլ պետք է մաքրենք, դպրոցն էլ մեր տունն է, ճիշտ է, չէ՞, հայրիկ:

—Ճիշտ է, բալիկ ջան,—ասաց հայրը:

Ահա նրանք հավասարվեցին մի տղայի, որ քայլում էր մայրիկի հետ:

—Է՜յ, Սերյոժա, չմոռանաս գրադարանի մասին:

Սերյոժան գլխով արեց, հասկացնելով, որ չի մոռանա:

—Ի՞նչ գրադարան,—հարցրեց հայրիկը:

—Դու մեր դպրոցի գրադարանը տեսել ես, չէ՞:

—Այո:

—Բացի դրանից, մենք ուզում ենք դասարանական գրադարան էլ ունենալ: Դու ինձ համար մանկական գրքեր կառնե՞ս: Բոլորս պետք է տանենք:

—Կառնեմ: Լավ եք մտածել...

Տրամվայի կանգառում ուրիշ սաներ ու ծնողներ էլ էին սպասում:

—Երանուհի,—կանչեց Համլիկը երկար հյուսքերով թխադեմ մի աղջկա: Աղջիկը մոտեցավ:—Հիշիր, հա՛, կարմիր գույնի թելը չմոռանաս:

—Իսկ դու՝ կանաչը,—ասաց Երանուհին:

—Ես չեմ մոռանա, ի՜նչ ես ասում,—հետո դարձավ հորը,—հայրիկ, տե՛ս, չմոռանաս թել առնել: Մենք ցուցահանդես ենք բացելու: Երբ դասերն ավարտվեն, ես ու Երանուհին ձեռագործ ենք ներկայացնելու:

Տանը Համլիկն ավելի մանրամասն պատմեց ցուցահանդեսի մասին:

—Ժորան մեր ամենաշնորհալի տղան է,—ասում էր Համլիկը.—Նա սղոցով ֆաներայից պատրաստել է հեքիաթից վերցրած մի պատկեր՝ նապաստակներն անտառում: Շատ լավն է, շատ,—ոգևորված ասում էր նա:—Դավիթը պլաստիլինից քանդակել է պիոների արձան: Աստղիկը՝ ստվարաթղթից երկու սենյականոց տուն է պատրաստել, բաց պատուհանից ու դռնակներից ներսի սենյակն էլ է երևում, դա էլ լավն է:

Ճաշից հետո հայրիկն առաջարկեց կինո գնալ:

—Իսկ ի՞նչ նկար է,—հարցրեց Համլիկը:

«Պատմվածքներ Լենինի մասին»:

Ո՜ւ... մենք դա տեսել ենք դպրոցում, կինոներ մենք հաճախ ենք տեսնում, հեռուստացույց էլ ունենք, տիկնիկային ներկայացումներ էլ ենք տեսնում, պատանի հանդիսատեսի թատրոն էլ ենք գնում: Հետո, գիտե՞ս, հայրիկ, որ նոր դաշնամուր ունենք: Ընթրիքից հետո միշտ ուրախ ժամանց ենք ունենում: Հենրիկն ու Անդրանիկը մեր ամենալավ երգողներից են, իսկ Էմման, Լուսիկը, Լյուդմիլան, Ռուզաննան, Անահիտը հիանալի պարում են: Թատերական խումբն էլ ցույց է տալիս «Անբուն նապաստակը»:

Հայրիկը բարձերին հենված լսում էր Համլիկին, բայց հանկարծ վեր կացավ:

Ո՞ւր ես գնում:

Թեյ պատրաստեմ:

Սպասիր, ես կպատրաստեմ: Մենք դպրոցում բա ինչպես ենք հերթապահում ճաշարանում: Հիմա թող ե՛ս քեզ թեյով հյուրասիրեմ:

«Ա՜յ քեզ բան,—մտածում էր հայրիկը, երբ Համլիկը խոհանոցում էր:—Մի քանի ամիս է ինչ գիշերօթիկ դպրոց է հաճախում և այսքան փոխվել է: Մի ժամանակ քմահաճ, չլսող, նույնիսկ ծույլ աղջիկ էր, իսկ հիմա՞...

Հայրիկը նայում էր թեյնիկը ձեռքին սենյակ մտած Համլիկին, տեսնում, թե ինչպես զգույշ է շարժվում բաժակները լցնելիս:

Դու ինչո՞ւ չես հարցնում, թե ինչպես ավարտվեց շախմատի տուրնիրը,—հանկարծ հարցրեց Համլիկը:

Ինչո՞ւ հարցնեմ, երբ պատի թերթում կարդացել եմ այդ մասին,—պատասխանեց հայրիկը,—ու գիտեմ, որ չեմպիոնը Ժորան է:

—Ճիշտ է, բայց դու չգիտես, որ հիմա շախմատ խաղացողների թիվն ավելացել է, Ժորան բոլորին էլ սովորեցնում է:

Համլիկը հանկարծ լրջացավ:

—Դու գիտե՞ս, որ ես մի անգամ «երկու» եմ ստացել ռուսաց լեզվի գրավորից:

«Երկո՞ւ», ինչո՞ւ,—զարմացավ հայրիկը:

—Որովհետև շատ կեղտոտ էի գրել:

—Քառորդի վերջում դու «5» ունեիր ռուսաց գրավորից:

Ճիշտ է, բայց մի անգամ էլ «2» ստացա: Ես խոսք եմ տվել, որ դա այլևս չկրկնվի:

—Դե, ես ի՞նչ ասեմ, Համլիկ, եթե դու զգում ես քո սխալը, ուրեմն՝ հեշտ կուղղես, ճի՞շտ է:

Համլիկը գլխով համաձայնության նշան արավ:

Լավ, թեյդ սառչում է, խմիր ու քնիր, խմորեղեն կեր:

—Ի՞նչ քնեմ, դեռ էլի բան կա պատմելու:

Հայրիկը ծիծաղեց.

Հիմա ուշ է, վաղը կպատմես:

—Լավ, մի բան էլ հիմա պատմեմ, հա՞,—խնդրում է Համլիկը:

—Դե որ ասում ես՝ պատմիր:

—Լեյլիի մայրիկի մասին եմ պատմելու:

—Պատմիր:

—Լեյլիի մայրիկը աշխատում է «Կարմիր Աստղ» գորգագործական արտելում: Մեր դրուժինան որոշեց գնալ «Կարմիր Աստղ», ծանոթանալ նրա մայրիկի հետ, տեսնել՝ ինչպես են գործում գորգեր: Մենք ծաղիկներ շատ ենք աճեցրել դպրոցում: Ա՛յ, նրանցից մի լավ փունջ կապեցինք ու գնացինք: Բանվորուհիները մեզ ուրախությամբ ընդունեցին, պատմեցին իրենց գործերի մասին, մենք էլ համերգ տվեցինք նրանց համար ու դպրոց վերադարձանք: Նրանք էլ մեզ էին նվերներ տվել՝ սեղանի երկու սփռոց ու հատակի գորգ: Լավ է, չէ՞:

Լավ է, լավ, հիանալի է, աղջիկս, դե հիմա քնիր, ուշ է:

...Քիչ հետո Համլիկը խաղաղ քնած էր:




ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

1.

Երբ երկար տարիների բացակայությունից հետո ես վերադարձա Երևան, բնականաբար սկսեցի հետաքրքրվել, թե ով է կենդանի, ով է հեռացել քաղաքից, ով ինչով է զբաղված...

Առաջին օրերը ես հարցուփորձ էի անում իմ բարեկամների, մտերիմ ընկերների ու ծանոթների մասին, իսկ հետո սկսեցի հետաքրքրվել ավելի ու ավելի հեռավոր ծանոթներով և նույնիսկ անծանոթներով։

Իմ ուսուցչի մասին ես հարցրի համարյա ամենավերջում, վերադառնալուցս մոտ մի շաբաթ հետո, այն էլ հանկարծակի մտաբերելով նրան։ Բայց դրանից չպետք է եզրակացնել, թե ես քիչ էի հարգում նրան։ Ընդհակառակը, ես նրա հանդեպ միշտ էլ ունեցել եմ ամենախոր հարգանք, և նա եղել է իմ սիրելի ուսուցիչը, որին ես պարտական եմ ոչ միայն հայոց լեզվի ու գրականության իմ գիտելիքներով, այլև դաստիարակությամբ։ Բայց նա իմ անձնական կյանքից հեռացել էր շատ վաղուց, դեռ նախքան իմ Երևանից մեկնելը։

Սիրելի, թանկագին ուսուցիչներ... Երբ ես հիմա մտածում եմ նրանց մասին, ամեն անգամ խղճի խայթը մի փոքր տանջում է ինձ։ Ապրում են այդ հրաշալի մարդիկ մեզ համար, դպրոցում ամեն օր մեզ հաղորդում են բազմազան գիտելիքներ, համբերությամբ տանում են մեր չարությունները և երբեմն նույնիսկ կոպտությունները կամ անհարգելի վերաբերմունքն իրենց հանդեպ, համբերությամբ ու աստիճանաբար կոտրում են մեր ծուլությունը, անլուրջ վերաբերմունքը դեպի ուսումը, և մեզանից պատրաստում են կրթված մարդիկ։

Իսկ ինչո՞վ ենք վարձահատույց լինում մենք։ Հենց որ ավարտում ենք դպրոցը, մենք այլևս ոչ մի կապ չունենք նրանց հետ։ Միայն երբեմն-երբեմն, վերհիշելով, մենք երախտագիտության խոսքեր ենք շշնջում մեր մտքում։

... Իսկ ինչո՞ւ համար ես հարցուփորձ արեցի ոչ թե բոլոր ուսուցիչների մասին, այլ միայն մեկի։ Դա հասկանալի է... Ինչո՞ւ թաքցնել, որքան էլ որ դու սիրում ու հարգում ես բոլոր ուսուցիչներին, նրանց մեջ անպայման լինում է մեկը, որին դու բոլորից ավելի ես սիրում։ Գուցե դրա պատճառն այն է, որ դու նրա ավանդած առարկան ես ավելի շատ սիրում, քան մյուս առարկաները։

Ինչ էլ որ լինի, ես մերոնց հարցրի միայն նրա մասին:

— Ապրում է։ Եվ նույնիսկ շատ էլ չի փոխվել։ Այդ տարիքում մարդիկ շատ չեն փոխվում։

— Ո՞րտեղ է ապրում։

— Չգիտեմ։

— Իսկ ո՞ր դպրոցում է աշխատում։

— Չգիտեմ։ Գուցե թոշակառու է։ Ես նրան տեսել եմ ընդամենը երկու-երեք անգամ, հեռվից, իսկ վերջին անգամ՝ անցյալ տարի...

Ես որոշեցի անպայման հանդիպել իմ նախկին ուսուցիչ ընկեր Հակոբյանին։

2.

Երևակայեցեք, ես մինչև այդ չգիտեի էլ նրա անունը։ Բայց դա անուշադրության հետևանքով չէր։ Ինչպես հայտնի է, մենք դպրոցներում մեր դասատուներին անվանում ենք «ընկեր Հակոբյան» կամ «ընկեր Պետրոսյան...» Իսկ դպրոցից դուրս ո՞րտեղ կարող էի լսել նրա անունը։ Այո՛, մի անգամ թերթում կարդացի նրա մասին, բայց այնտեղ էլ գրված էր «ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցիչ Վ. Պ. Հակոբյան»։

Թեև ես չէի շտապում անպայման հենց այսօր կամ վաղը տեսնել նրան, բայց և այնպես երբևէ հարկ պիտի լիներ որևէ կերպ նրան գտնել։ Հույս

դնել պատահական հանդիպման վրա ես չէի կարող։

Դպրոցը, որտեղ սովորել էի ես, գտնվում էր մեր տանը շատ մոտիկ։ Բայց իմ ավարտելուց կարճ ժամանակ հետո հայրս, որն այն ժամանակ կենդանի էր, ստացավ նոր բնակարան քաղաքի բոլորովին մի այլ մասում, և մենք փոխադրվեցինք։

Իսկ այժմ, իմ վերադառնալուց հետո, ես տեսա, որ քանդել են նաև մեր դպրոցի հին շենքը և դրա տեղում բաց են արել պարտեզ, որի երկու կողմերում կառուցել են երկու մեծ դպրոց։ Բայց դրանցից ոչ մեկի դռան վրա ես չկարդացի ոչ իմ դպրոցի անունը, ոչ համարը։

Ես գիտեի նաև ընկեր Հակոբյանի բնակարանը։ Տարիներ առաջ, դասընկերներով գնացել էինք նրա մոտ՝ ծննդյան վաթսունամյակը շնորհավորելու, բայց այժմ չկար ոչ նրա ապրած այն հին տունը, և ոչ էլ նրա նեղ փողոցը։ Ո՞ւր էր փոխադրվել նա, ո՞վ գիտե։

Ես ուղևորվեցի ժողկրթբաժին և առանց դժվարության ստացա ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցիչ, այժմ թոշակառու, Վահրին Բարեղամի Հակոբյանի հասցեն։ Ուրեմն ես նույնիսկ մոռացած եմ եղել նրա հայրանվան սկզբնատառը... Ներիր ինձ, սիրելի, թանկագին ընկեր Հակոբյան...



3.

Երբ ես բարձրացա նորակառույց շենքի երրորդ հարկը և զանգը տվեցի, դուռը բաց արեց ընկեր Հակոբյանն ինքը։ Ուրիշ ո՞վ կարող էր բաց անել, երբ նա ապրում էր մենակ։

Ես իսկույն ճանաչեցի նրան։ Իսկապես որ, նա շատ քիչ էր փոխվել։ Նույն բարի դեմքը, այտոսկրները դուրս ցցված, և այտերը խիստ փոս ընկած։ Նրա նիհար դեմքին անհամապատասխան, նույն լիքը շրթունքները, թևթևակի սեղմված։

Փոխվել էին ընկեր Հակոբյանի միայն մազերը, որոնք այժմ վերջնականապես սպիտակել էին։

— Լսում եմ ձեզ,— ասաց նա։

— Բարև ձեզ, ընկեր Հակոբյան,— ուրախ բացականչեցի ես։

— Բարև։ Ո՞ւմ հետ պատիվ ունեմ։

— Ես ձեր աշակերտներից եմ։

— Մտե՛ք, համեցե՛ք...

Նա ինձ առաջնորդեց իր աշխատասենյակը, շտապ մոտեցավ լուսամուտի մոտ դրված գրասեղանին, դրեց ակնոցը, մոտեցավ ինձ, ուշադիր զննեց իմ դեմքը։ Ապա շշնջաց հանցավոր տոնով.

— Չեմ ճանաչում... Մեծացել եք...

Ես տվեցի իմ անուն ազգանունը, բայց դա ևս, ոչինչ չտվեց նրա հիշողությանը։

— Սպասեցեք,— ասաց նա,— եկեք այստեղ։ Սըրանցից ո՞րն եք դուք...

Մենք մոտեցանք նրա գրասեղանին, անցանք հետևը։

Այնտեղ, պատի վրա, կողք-կողքի և իրար տակ խփված էին տետրակի երկու թերթի մեծություն ունեցող քառասունից ավելի խմբանկարներ՝ առաջին հայացքից բոլորն իրար նման։ Դրանցից յուրաքանչյուրի վրա, երեքական շարքով, հովհարաձև, դասավորված էին աշակերտների ձվաձև լուսանկարներ՝ անուն-ազգանունները տակը գրած։

Այդ խմբանկարներից յուրաքանչյուրի վերևում նկարված էր նեղ ու երկար ժապավեն՝ ծալծլված ծայրերով, և վրան գրված էր դպրոցի անունը և ապա՝ «այսինչ-այսինչ ուսումնական տարվա 20ը-ջանավարտներ»։

—Ահա սա եմ ես,— ասացի ես, մատս դնելով առա-



ջին անգամ լուսանկարվելուց շփոթված, սառած դեմքով մի ցինոր պատանու վրա։ Տանը ես էլ ունեի այդ խմբանկարից։

— Պառնիկ Հովհաննիսյան, — բացականչեց իմ ուսուցիչը՝ գրկելով ինձ։ —Ինչպե՞ս չեմ հիշում։ Դու հիմա է՞լ ես սիրում Շիրվանզադեին։ Հիշո՞ւմ ես, շարունակ «Արտիստ»-ից էիր խոսում։ Ո՞վ կըսպասեր, թե օդաչու ես դառնալու... Նստիր, Հովհաննիսյա՛ն, պատմիր։

Ես արդեն պատրաստվում էի մոտենալ նրա առաջարկած աթոռին, երբ հանկարծ պատի վրա մի բան գրավեց իմ ուշադրությունը։

Մի խմբանկարի վրա աշակերտներից մեկի լուսանկարը և անուն—ազգանունը ծածկված էր ճվաճև կտրված սև թղթով...

— Մեռե՞լ է... —հարցրի ես՝ մատով ցույց տալով սև թուղթը։

Հարցրի և իսկույն զղջացի դրա համար։ Հակոբյանը ծայր աստիճան մռայլվեց և առանց ինձ պատասխանելու, խոնարհեց գլուխը։ Եթե ես չիմանայի, որ նա երեխաներ չուներ, պիտի ենթադրեի, թե սև թղթի տակ գտնվում է նրա մեռած տղայի լուսանկարը։ Բայց ինչո՞ւ սևի տակ թաքցրած և ոչ թե սև շրջանակի մեջ առնված...

Քիչ հետո սակայն, Հակոբյանը բարձրացրեց աչքերը, և ես տեսա, որ նրա մշտապես բարի աչքերում ավելի շատ զայրույթ կար, քան թե վիշտ։

— Երանի թե մեռած լիներ,—ասաց նա։—Այդ դեպքում ինչո՞ւ պիտի ծածկեի սև թղթով։

— Անպատվաբեր արարքի համա՞ր...—հարցրի ես զգուշությամբ։

— Մեղմ է ասված, Հովհաննիսյան, — նկատողություն արեց Հակոբյանը՝ կարծես պատրաստվելով վատ գնահատական նշանակել ինձ։—Նայիր այստեղ։ Տեսնո՞ւմ ես այս գեղեցիկ տղային։ Դա ժիրայր Օլթեցյանն է, դու նրան չես հիշի։ Սրանից մի քանի տարի առաջ զանգը տվեցին։ Դուռը բաց արեցի։ Կանգնած էր մի հաղթանդամ, հիանալի երիտասարդ։ Տեսնելով ինձ, նա սարսափելի այլայլվեց ու գունատվեց։ Ուզում էր գնալ, բայց ես նրան հրավիրեցի ներս, որ նստի, հանգստանա։ Նա մտավ, բայց փոխանակ հանգստանալու, բռնեց իմ ձեռքը, սկսեց համբուրել, երեխայի պես լաց լինել և, չգիտես ինչու, ներողություն խնդրել ինձանից։ Ես ոչինչ չէի հասկանում։ Մի քիչ հանգստանալով, նա ինքը պատմեց ամեն ինչ։ Լսել էր, որ այս բնակարանում ապրում է մի միայնակ ծերունի, որն իբր թե «ոսկի ունի պահած»։ Եկել էր ինձ կողոպտելու... Դա իմ լավ աշակերտներից մեկն էր՝ ժիրայր Օլթեցյանը... Տեսնելով, որ ես եմ այդ ծերունին, նա այնպես էր ցնցվել հոգեպես, այնպես էր մի վայրկյանում հասկացել իր սև գքաղմունքի ստորությունը, որ այդ օրվանից կտրուկ հրաժարվեց իր քրեական կյանքից և դարձավ սովետական ազնիվ քաղաքացի։ Այժմ աշխատում է մահուդի գործարանում, հաճախ այցելում է ինձ, անցյալ ամիս բերեց, ծանոթացրեց իր ապագա կնոջը...

Ես ակամայից երեսս դարձրի դեպի սև թուղթը։

Ուրեմն ո՞վ է թաքնված դրա տակ, ի՞նչ անուղղելի մարդ...

Հակոբյանը շարունակեց.

— Ես, Հովհաննիսյան, կարող եմ պատմել քեզ իմ համարյա բոլոր նախկին աշակերտների մասին։ Բոլոր նրանք պատիվ են բերում իրենց ուսուցիչներին, իրենց դպրոցին... Բացի մեկից։ Նա, այդ մեկը... նա...

Հակոբյանը կակազեց, ընդհատեց։ Նա խիստ հուզված էր և հազիվ կարողացավ քիչ հետո ավարտել իր խոսքը։

— Նա Հայրենական պատերազմի ժամանակ անցել է թշնամու կողմը... Ճամբարից փրկված նախկին գերիներից ականատեսներ կան, թե ինչպես նա ֆաշիստի համազգեստ հագած, բոլորի ներկայությամբ գնդակահարել է մի պարտիզանի...

... Մենք երկար ժամանակ լուռ էինք։ Ապա ես կցկտուր պատմեցի իմ մասին, և այն էլ միայն նրա ուշադրությունն այլ կողմ շեղելու համար։ Բայց նա լսում էր ցրված, անուշադիր։ Ես անզգուշորեն շոշափել էի նրա հոգին վերքոտած մի նյութ և այժմ ամենից լավը կլիներ, եթե ավարտեի մեր տեսակցությունը, հնարավորություն տայի նրան մնալ մենակ, հանգստանալ։

Ես վեր կացա, բայց նախքան հրաժեշտ տալս, ակամա մոտեցա պատին, ուշադիր նայեցի սև թղթին։ Կարծես փորձում էի ներթափանցել դրա տակ, հասկանալ, թե ինչպե՞ս կարող էր մեր դպրոցի և ընկեր Հակոբյանի պես հիանալի ուսուցչի աշակերտը լինել այդպիսի գարշելի արարած...

Հակոբյանը սխալ հասկանալով իմ ուշադիր հայացքը, մոտեցավ ինձ և ասաց հանցավոր ձայնով:

— Այո, Հովհաննիսյան, դա կարող է քեզ մոտ տարակուսանք առաջացնել, թե ինչո՞ւ համար, փոխանակ կտրելու, դեն նետելու նրա լուսանկարը, ես թողել եմ իր տեղը և միայն ծածկել եմ սև թղթով... Գիտե՞ս ինչ, Հովհաննիսյան... Ես հրաշքների չեմ հավատում, բայց այստեղ ես սպասում եմ հրաշքի... Եվ ես... և ես այն ժամանակ կհանեմ սև թուղթը... Գիտեմ, գիտեմ, դա անհնար է, կան ականատեսներ, նույնիսկ գոյություն ունի նրա լուսանկարը՝ ֆաշիստական համազգեստով, բայց...

Ես ջերմ սեղմեցի նրա ձեռքը, մխիթարեցի նրան ինչպես կարող էի և ելա դուրս։

4

Անցավ հինգ տարի։ Այդ հինգ տարում ես այլևս չհանդիպեցի իմ ուսուցչին և ոչ էլ պատահաբար տեսա փողոցում։ Ըստ երևույթին նա այժմ դրսում շատ սակավ էր լինում։

Նորից եմ հավատացնում, որ դա իմ կողմից ոչ հարգանքի պակաս էր և ոչ էլ անուշադրություն։ Նախ, ես չափազանց զբաղված էի և լինելով քաղաքացիական ավիացիայի օդաչու, իմ աշխատանքի բերմամբ շարունակ բացակայում էի քաղաքից։

Բայց երբ անցավ հինգ տարի, ես նորից որոշեցի մի անգամ էլ այցելել նրան։ Ո՞վ գիտե, առիթ կլինի՞ այլևս երրորդ անգամ հանդիպելու։ Չէ՞ որ նա շատ ծեր էր...

Այս անգամ դուռը բաց անելիս նա ճանաչեց ինձ և տվեց իմ ազգանունը։ Մենք նորից մտանք նրա առանձնասենյակը։ Ամեն ինչ նույնն էր այնտեղ։ Նորից նույն կահկարասին, նույն աթոռները։ Նորից նույն խմբանկարները պատի վրա։ Ավելացել էր միայն մի աշակերտի խոշոր, լրագրի կես թերթի մեծության ձվաձև լուսանկար, որը պլաստմասսայի շագանակագույն գեղեցիկ շրջանակի մեջ առնված, խփված էր խմբանկարների վերևում։

Բայց ես, իհարկե, առաջին հերթին հիշեցի սև թղթի մասին և նայեցի այդ կողմ։ Որքան մեծ եղավ իմ զարմանքը, երբ ես չտեսա այն։ Դրա փոխարեն խմբանկարի վրայից նայում էր նորից իր շրջանավարտ դասընկերների շարքը մտած մի գեղեցիկ տղա, աչքերի վառվռուն արտահայտությամբ... Բայց ամենազարմանալին այն էր, որ խմբանկարների վերևում խփված խոշոր լուսանկարի աշակերտը նույն տղան էր...

Ես վեր ցատկեցի տեղիցս, մոտեցա խմբանկարին և կարդալով տղայի անուն ազգանունը, չկարողացա զսպել իմ գերագույն զարմանքի բացականչությունը...

Դա ետմահու Սովետական Միության հերոսի կոչում ստացած Դավիթ Մանուկյանն էր...

— Այո՛, այո՛,— ուրախությունից և հուզմունքից կերկերացող ձայնով ասաց իմ ուսուցիչը։ — Պարզվեց, ամեն ինչ պարզվեց։ Հիշո՞ւմ ես, Հովհաննիսյան, անցյալ տարի, կոչում շնորհելու հետ մեկտեղ մանրամասն գրեցին նրա մասին բոլոր թերթերում։ Ինչպիսի՜ հերոս... Երեք տարի ֆաշիստի համազգեստ հագած, գործել նրանց թիկունքում... Բազմաթիվ սպաների ներկայությամբ գնդակահարել ձերբակալված սովետական պարտիզաններից մեկին՝ իբր թե չիմանալով, որ հենց այդ մեկը բոլորովին էլ սովետական պարտիզան չէ, այլ նրանց մոտ ուղարկված գերմանական խոշոր հետախույզ, լրտես...

Ես այդ բոլորը կարդացել էի թերթերում։ Ուստի և այժմ ես ոչ այնքան լսում էի նրան, որքան որ

Ուզում եմ ամեն ինչ ԻՄԱՆԱԼ

№ 9 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1960

## Գիտե՞ք որ...

...աշխարհի բոլոր օվկիանոսներում և ծովերում լուծված է 20 միլիոն խոր. կմ. տարբեր հանքային աղեր: Եթե ջուրը թորենք, ապա անջատված աղը ամբողջ ցամաքը կծածկի 135 մետրանոց շերտով:

...բնությունը ամենից շատ ատամներ շնորհել է պարտեզի սովորական խխունջին, որն ապրում է Ամերիկայում: Նրա լեզվի վրա կա 135 շարք ատամ, իսկ յուրաքանչյուր շարքում 105 ատամ: Խխունջը ստորերկրյա միջանցք փորելիս գործի է դնում 14 175 ատամ:

...երկրագնդի վրա կա մոտավորապես 75 միլիարդ թռչուն: Այս հաշիվը կատարել է ֆրանսիացի մի բնագետ: Նրա կարծիքով թռչունների մի տեսակը տարեց-տարի նվազում է, իսկ մյուս տեսակները՝ մանավանդ ճահճային թռչունները, աղավնիները և ճնճղուկները՝ ավելանում են:

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՔՈՒՆ

Գիտություն և տեխնիկա

Ի՞նչ է քունը: Ի՞նչ է երազը: Այդ մասին գրված են շատ հետաքրքիր գործեր: Մարդիկ ոչ միայն գտել են քնի գաղտնիքը, այլև սովորել են այն օգտագործել բուժման նպատակներով: Արհեստական քունը օգտագործվում է վիրաբուժության, ներքին, նյարդային հիվանդությունների և հոգեկան խանգարումների ժամանակ:

Առաջ արհեստական քունը առաջացնում էին զանազան դեղորայքների օգնությամբ: Հիվանդը ընդունում էր դեղափոշին և քնում: Բայց այդ միշտ չէր, որ օգնում էր: Բացի դրանից քնաբեր-թմրեցուցիչ դեղերի հաճախակի օգտագործումը վատ է անդրադառնում մարդկանց առողջության վրա: Ներկայումս հիվանդին արհեստական կերպով քնեցնում են ոչ միայն քնաբեր դեղերով և հիպնոսով, այլև էլեկտրականությամբ: Հատուկ ձևի իմպուլսները, որոնք ստեղծում է «էլեկտրաքուն» ապարատը, ազդում են գլխի ուղեղի կեղևի վրա, առաջացնելով նյարդային հյուսվածքների արգելակում: Մարդը սկսում է նիրհել, իսկ հետո քնում է:

## ԽՈՐԸ ԿԱՄ ՆԵՐՔԻՆ ՏԱՔԱՑՈՒՄ

Գիտություն և տեխնիկա

Երբեմն, տարբեր հիվանդությունների ժամանակ մարդու օրգանիզմը խորը կամ ներքին ջերմացման կարիք է զգում: Հոդերի ու մկանների բորբոքումները այժմ հաջող կերպով բուժում են կարճալիք էլեկտրամագնիսական ալիքների օգնությամբ:

Այդ ալիքների ճառագայթող հատուկ հարմարանքը դրվում է հիվանդի մարմնի վրա: Ճառագայթումը ուղղում են դեպի այն օրգանը, որն անհրաժեշտ է տաքացնել:

Անհրաժեշտ ժամանակը վերջանալուն պես, մեքենան ինքն իրեն անջատվում է: Չէ՞ որ գերհզոր հաճախականության հետ պետք է լինել զգույշ: Ալիքների չարաշահումը ստեղծում է նաև բարդություններ:

## Ո՞Ր Է ՏԻԵԶԵՐՔՈՒՄ ԱՄԵՆԱՄԵԾԸ ԵՎ Ո՞ՐԸ ԱՄԵՆԱՓՈՔՐԸ

Մեզ շրջապատող բնության մեջ կարելի է հանդիպել տարբեր մեծություններ ունեցող մարմինների: Բայց նույնիսկ ամենաբարձր լեռներն էլ Երկրագնդի հետ համեմատած շատ չնչին են: Կար ժամանակ, երբ մարդը ամենամեծ մարմինը համարում էր Երկրագունդը: Սակայն, երբ նա հնարավորություն ունեցավ իր դիտողությունները տարածել երկրի սահմաններից դուրս, ապա նրա համար պարզ դարձավ, որ գոյություն ունեն Երկրագնդից շատ ավել մեծ մարմիններ:

Ուսումնասիրելով Արեգակնային համակարգությունը պարզվեց, որ նրա որոշ անդամներ շատ անգամ ավելի մեծ են Երկրագնդից: Այսպես օրինակ՝ Յուպիտեր հսկա մոլորակը իր ծավալով 1300 անգամ, իսկ համակարգության կենտրոնական մարմինը՝ Արեգակը մեկ միլիոն երեք հարյուր հազար անգամ գերազանցում են Երկրագնդին: Սակայն Արեգակը շատ հեռու է ամենամեծ մարմին համարվելուց: Տիեզերքում կան բազմաթիվ արևներ՝ աստղեր, որոնք իրենց չափերով բաժանվում են երկու խմբի՝ հսկաների և թզուկների: Մեր Արեգակը իր տրամաչափերով պատկանում է թզուկներին, քանի որ իր մեծությամբ նա այնքան էլ մեծ չէ: Կարմիր հսկա աստղերից Բետելհեյզեն տրամագծորեն 420 անգամ մեծ է Արեգակից, եթե նրա ներսում տեղավորենք արեգակնային համա-

(Շարունակությունը 2-րդ էջում)

Սովետական
Գիտություն և տեխնիկա

# ԲՈՐՄԵՔԵՆԱՆ ՑԱՎ ՉԻ ՊԱՏՃԱՌՈՒՄ

Մարդու օրգանիզմի հիգիենան սկսվում է բերանի խոռոչի պարբերաբար և ճիշտ խնամքից: Երբ առողջ են ատամները, մարդ կարող է հանգիստ լինել, որ ստամոքսային հիվանդություններ չի ունենա:



Այդ պատճառով էլ հիվանդ ատամները անհրաժեշտ է ժամանակին բուժել: Բայց սովորական բորմեքենան հիվանդին տհաճություն ու ցավ է պատճառում: Ահա թե ինչու շատերը վախենում են, անուշադրության մատնում հիվանդությունը և արդյունքում ատամը կորցնում:

Այժմ գոյություն ունեն ուլտրաձայնային բորմեքենաներ, որոնք ցավ չեն պատճառում, բայց աննկատելի տատանումներով շրջատաշում են ատամները այնպես, որ հիվանդը ոչինչ չի զգում: Ինչպե՞ս է դա կատարվում:

Մի երևույթ գոյություն ունի, որը կոչվում է մագնիտոստրիկցիա: Դրա էությունը հետևյալն է: Պողպատյա թիթեղի մագնիսացման և մագնիսաթափման ժամանակ նրա երկարությունը փոփոխվում է մագնիսական դաշտի փոփոխման արագության համապատասխան: Այդ տատանումները կատարվում են աննշան չափով, ուլտրաձայնային հաճախականությամբ: Դրանց ազդեցության տակ հատուկ հղկանյութի օգնությամբ հիվանդ ատամը քայքայվում է:

Այս ամենը այնքան արագ է կատարվում, որ հիվանդը նույնիսկ վախենալ չհասցնելով, մեկ էլ բժշկից լսում է, որ ատամի փչակը արդեն մշակված է ատամնալցման համար:

### ԻՆՉՊԵՍ ՁՈՒՆ ՇՇԻ ՄԵՋ ՄՏՑՆԵԼ...

*Թանձր գինու քացախի մեջ ձուն որոշ ժամանակ մնալուց հետո այնքան է փափկում, որ կարելի է նրան ցանկացած ձև տալ: Հետևաբար, քացախից դուրս եկած ձուն, եթե դնեք շշի բերանին, այն դանդաղորեն սահելով կմտնի շշի մեջ: Իսկ եթե շշի մեջ լցնեք սառը ջուր, ձուն նորից կվերականգնի իր նախկին կարծրությունը:*

### ԻՆՉՊԵՍ ՁՈՒՆ ԴՆԱԿԻ ՄԵՋ ԿԱՆԳՆԵՑՆԵԼ

*Հում ձուն մի քանի անգամ ուժեղ թափ տալուց՝ միջի դեղնուցը թաղանթը պատռելով, խառնվում է սպիտակուցի հետ: Այն ժամանակ շատ հեշտությամբ կարելի է ձուն դնակի մեջ կամ որևէ հարթ մի տեղ կանգնեցնել ուղղահայաց:*

## ՆՎԱԳՈՂ ԾԱՌ



Հարավային Նուբիայում մի ծառ կա, որը բացի առատ խեժ արտադրելուց, մարդկանց ուշադրությունն է գրավում իր քաղցր ու մեղմ նվագով: Ամեն անգամ, երբ մի թեթև քամի է փչում, ծառը սկսում է նվագել: Ձայները առաջանում են այն փոքրիկ ծակոտիներից, որոնք գտնվում են ծառի բազմաթիվ ճյուղերի վրա: Զանազան միջատներ ծակծկելով ճյուղերը և ուտելով դրանց միջուկը, իրենց կամքից անկախ՝ սրինգներ են պատրաստում: Քամին մտնելով սրինգների մեջ, հաճելի ձայներ է առաջացնում, և լսողը մի պահ կարող է կարծել, թե դա իրոք երաժշտություն է:

Քամու ուժից կախված այդ տարօրինակ երաժշտությունն էլ փոփոխվում է:

(Սկիզբը 1-ին էջում

կարգությունը, ապա ներառյալ Մարս մոլորակի ուղեծիրը կմտնի նրա մեջ: Կարինի համաստեղության Անտարես աստղի տրամագիծը 480 անգամ գերազանցում է Արեգակին: Եթե Արեգակը պատկերացնենք պղնձյա հինգ կոպեկանոցի չափ, ապա Անտարեսը կլիներ հինգ հարկանի տան չափ:

Այժմ, մեզ հայտնի ամենամեծ աստղը Կառավարի համաստեղության Էպսիլոն գերհսկա աստղն է: Նա այնքան մեծ է, որ իր մեջ կարող է տեղավորել 20 միլիարդ Արեգակ: Էպսիլոն գերհսկան տիեզերքի ամենամեծ մարմինը համարել չենք կարող: Աստղային աշխարհում ավելի մեծ մարմիններ են հանդիսանում գրված ու գնդաձև աստղակույտերը և տարբեր աստղային համակարգությունները: Բազմամիլիարդ աստղերի, աստղային համակարգությունների, միգամածությունների ամբողջությունը կոչվում է Գալակտիկա: Գալակտիկայի չափերը այնքան մեծ են, որ դժվար կլինի այն արտահայտել կիլոմետրերով: Աստղագիտության մեջ մտցվել է այնպիսի միավոր, որը կոչվում է՝ լուսատարի: Դա այնպիսի հեռավորություն է, որ լույսը 300 000 *կմ/վրկ* արագությամբ կարող է անցնել մի տարում: Կիլոմետրերով արտահայտված լուսատարին հավասար կլինի՝ 9 500 000 000 000 *կմ*: Մեր գալակտիկան (Ծիր կաթինը) այնքան մեծ է, որ լույսը նրա մի ծայրից մյուսը կանցնի 85 000 լուսատարում:

Ներկայումս մեր գալակտիկայի սահմաններից դուրս բազմաթիվ այդպիսի գալակտիկաներ են հայտնի, որոնք կոչվում են արտաքին-գալակտիկաներ: Նրանցից յուրաքանչյուրը բաղկացած է հարյուրավոր միլիարդ

Ուզում եմ ամեն ինչ ԻՄԱՆԱԼ
էջ 2

Առողջապահություն
Գիտություն և տեխնիկա

# ՄԵՂՎԻ ԹՈՒՅՆԸ

Շատերդ զգացած կլինեք, որ երբ մեղուն կծում է, տեղն ուռչում է ու ցավում: Բայց մեղր արտադրող ճանճերը ունեն նաև իրենց սպանիչ թույնը: Մի քանի տասնյակ մեղվի խայթոցը մահացու է: Բայց այդ նույն թույնը ունի նաև բուժիչ հատկություններ: Առաջներում մեղուներին չորացնում էին, աղում, ջրի մեջ լցնում ու հյութը խմում, կամ ուղղակի ստիպում էին կծել մարմնի մասերը, որը բավականին ցավ էր պատճառում: Հետազոտելով նրա բուժիչ հատկությունը, բժիշկները մտածեցին մեղվի թույնն օգտագործելու միջոցներ գտնելու մասին:

Մեղվից հեշտ կերպով թույն ստանալու եղանակ մշակեց Սուխումի քաղաքի բժիշկ Ն. Լ. Ձիչկովը: Նա մեղուներին ունելով տեղափոխում է ապակե ամանը ծածկող նուրբ թաղանթի վրա, որի մեջ լցված է հատուկ յուղը. միջատները կծելով թաղանթը, թույնը խառնում են յուղի հետ: Այս դեղամիջոցը առանց մշակման գործածվում է բժշկության մեջ:

Մի հիվանդ, որը տառապում էր արյան ճնշման հիվանդությամբ և չէր բուժվում, այժմ իրեն հրաշալի է զգում Ձիչկովի մոտ բուժվելուց հետո: Մի ուրիշը, որը տարիներ շարունակ զամված էր անկողնում, այժմ քայլում և իրեն շատ լավ է զգում: Մոսկվայի վիրաբուժական հիվանդանոցի բժիշկ պրոֆեսոր Զայցևը գտել է, որ այդ դեղամիջոցը կարելի է օգտագործել երեխաների մոտ հաճախակի հանդիպող մի շարք հիվանդությունների բուժման համար:

ԱՐՏ. ԱՎԱԳՅԱՆ



# Կյանքը մրջնանոցում

Մեր ամսագրի 7-րդ համարում, եթե հիշում եք, խորհուրդ էինք տվել պատրաստել մրջնանոց: Եթե ձեզանից ոմանք արդեն պատրաստել են այդ մրջնանոցներից և սկսել են ուսումնասիրությունները, ապա արդեն գիտեն, թե որքան հետաքրքիր առօրյա ունեն մրջյունները:

Շատերին հետաքրքիր է, թե առհասարակ, բնության մեջ ինչպե՞ս են ապրում այդ աշխատասեր միջատները:

Փորձենք մի քանի խոսքով պատմել նրանց մասին:

Բոլորին հայտնի է, որ մրջյունները վարում են հանրային կյանք՝ բնակվում են միասին, կառուցում են բներ՝ միացյալ ուժերով և այլն: Մրջյունների գաղութներում հաստատված են հետևյալ երեք խմբերը.

1. Անթև աշխատավորներ, որոնք բների անբեղունակ էգ մրջյուններն են:
2. Թևավոր էգեր և արուներ.
3. Անթև մայրեր, որոնք այլ կերպ կոչվում են թագուհիներ:

Անթև աշխատավորները մրջնանոցի մեծամասնությունն են: Հիմնական աշխատանքները կատարում են աշխատավորները: Նրանք կառուցում են բներ, մյուսներին պաշտպանում են թշնամիների հարձակումներից, կերակրում են ձագերին և այլն:

Բեղմնավորվելուց հետո թևավոր արուները մեռնում են, իսկ էգերը իրենց թևերը կորցնելով կազմում են նոր գաղութներ: Յուրաքանչյուր բնում լինում են ձու դնող մի քանի մայրեր: Հենց դրանք էլ թագուհիներն են:

Երկրագնդի վրա գոյություն ունի մրջյունների 15 000-ից ավելի տեսակ: Շատերը վարում են նստակյաց, շատերն էլ քոչվոր կյանք: Վերջիններս ապրում են Աֆրիկայում և Ամերիկայում: Քոչվոր մրջյուններն իրենց ամբողջ կյանքը անց են կացնում երթի մեջ, երբեմն կարճատև դադար-

(Շարունակությունը 4-րդ էջում)

տաղային զանգվածներից: Միայն այդ թիվը ցույց է տալիս, թե ինչպիսի վիթխարի չափեր ունեն գալակտիկաները: Գիտությունը պարզել է, որ այդ հսկա աստղային համակարգությունները՝ արտագալակտիկաները, մեր գալակտիկայի հետ միասին կազմում են գերհսկա աստղային մի ընտանիք, որը կոչվում է մետագալակտիկա: Թե որքան մեծ է մետագալակտիկան, այսօր դժվար է վերջնական պատասխան տալ, քանի որ ժամանակակից աստղագիտական տեխնիկան ի վիճակի չէ որոշել նրա սահմանները: Մեզ հայտնի է միայն մի բան, որ եթե մետագալակտիկան ունի իր սահմանը, ապա այդ սահմաններից դուրս պետք է գոյություն ունենան անթիվ բազմությամբ այդպիսի աստղային համակարգություններ: Այսպիսով ամենամեծը ինքը տիեզերքն է, որը անսահման է ինչպես ժամանակի, այնպես էլ տարածության մեջ:

Իսկ ո՞րն է տիեզերքում ամենափոքրը: Առօրյա կյանքում մենք գործ ենք ունենում շատ փոքր մարմինների հետ: Տեխնիկայում օգտագործվում է այնպիսի բարակ մետաղալարեր, որոնք տրամագծով փոքր են մազի հաստությանը: Պողպատից կարելի է պատրաստել մինչև 0,005 *մմ*, իսկ ոսկուց 0,0001 *մմ* հաստության թիթեղիկներ, որոնք թափանցիկ կլինեն ապակու պես: Եթե ջրի մակերևույթի վրա մի փոքր կաթիլ յուղ կաթեցնենք, ապա նա ջրի երեսին փռվելով կառաջացնի 0,000004 *մմ*. հաստության թաղանթ: Իրականության մեջ մոլեկուլների աշխարհում, կամ ինչպես ընդունված է ասել, մանրաշխարհում մենք հանդիպում ենք ավելի փոքր մասնիկների: Հաշված է, որ նորմալ պայմաններում 1 խոր. *սմ*. ծավալում պարունակվում է գազի 27 000 000 000 000 000 000 հատ մոլեկուլ: Որպեսզի պատկերացնենք, թե որքան մեծ է այդ թիվը՝ բերենք մի օրինակ: Եթե այդ թվով աղյուսներ ունենա-

(Շարունակությունը 4-րդ էջում)

նայում՝ նրա երջանիկ դեմքին: Իսկ նա. կարծես կարդալով իմ մտքերը, բացականչեց.

— Ես երջանիկ եմ, Հովհաննիսյան, ես այժմ կարող եմ ասել, որ մեր դպրոցի ոչ թե համարյա բոլոր շրջանավարտներն են դարձել սովետական ազնիվ քաղաքացիներ այլ բոլորը, բոլորը՝ առանց «համարյա»-ի: Ոչինչ չի մթագնում իմ ծերությունը, ես երջանիկ եմ, Հովհաննիսյան...

Իմ սիրելի. թանկագին ուսուցիչ...



# «ՔԱՂՀԱՆԱՎՈՐԸ»

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

*Վարդիթերը տատիկի հետ*
*Գնաց արտը քաղհանի.*
*«Քաղհանն ի՞նչ է,— նա ասում էր,—*
*Փոքրիկ Սոսիկն էլ կանի...»*

*Եվ սկսեց քաղհան անել,*
*Բայց թե ո՞նց էր աշխատում,*
*Գառնախոտի, գայլուկի տեղ*
*Միշտ ցորենն էր պոկոտում:*




**Աշխարհագրական**

**խմբակի օրագիր**

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆ

1960 թվական հուլիսի 31.

*Մեր ռեսպուբլիկայի գունավոր մետաղաձուլման մասին ես զեկուցեցի:*

*Անցյալ դարի վերջին Հայաստանի գրեթե բոլոր հանքերն ու մետաղահալման գործարանները ֆրանսիացիները վերցրել էին իրենց ձեռքը: Սովետական իշխանությունը հաստատվելուց հետո այդ գործարանները վերափոխվեցին, սկսվեցին պղնձահանքերի նոր պաշարների որոնումները... Սովետական Հայաստանը սկսեց ավելի շատ պղինձ տալ, քան նախահեղափոխական շրջանում:*

*Առաջներում մեզ մոտ միայն պղինձ էին արդյունահանում: Իսկ հիմա նաև ուրիշ գունավոր մետաղներ: Օրինակ՝ մոլիբդեն: Այդ մետաղի հանքերը գտնվում են Քաջարանում: Բացի դրանից, մեր ռեսպուբլիկան տալիս է կապար, ցինկ, անագ և այլ գունավոր մետաղներ:*

*Զեկուցման վերջում ես պատմեցի նաև այն մասին, որ Սովետական իշխանության տարիներին շատ են աճել ու փոխվել այն քաղաքներն ու ավանները, որ գտնվում են գունավոր մետաղների արդյունահանման ձեռնարկությունները: Դրանք են Ալավերդին, Ղափանը, Շամլուղը, Քաջարանը, Ախթալան, Դաստակերտն ու Ագարակը:*

ԶԱՎԵՆ ԲԱԼԱՆԹԱՐՅԱՆ

1960 թվականի օգոստոսի 7.

*Մեզ մոտ պղինձ վաղուց են արդյունահանում: Մոլիբդեն և ուրիշ գունավոր մետաղներ սկսեցին*

ավել ուշ ստանալ։ Բայց ալյումինի արդյունաբերությունը մետաղամշակման բնագավառի ամենաերիտասարդ ճյուղն է։

Երեկ եղանք Քանաքեռի ալյումինի գործարանում։ Այդ գործարանը շատ երիտասարդ է. ընդամենը 10 տարեկան, բայց նրա շուրջն արդեն աճել է ամբողջ մի քաղաք՝ իր գեղեցիկ բնակելի



շենքերով, խանութներով, մանկապարտեզներով և մանկամսուրներով, կուլտուրայի պալատով, դպրոցներով։

Գործարանը արտադրում է այնպիսի մաքուր ալյումին, որը Սովետական Միության մեջ համարվում է լավագույնը։

Մենք եղանք այն ցեխում, ուր ալյումին են ստանում նեֆելինային սիենիտներից։ Ընկեր Պետրոսյանն ասաց, որ հիմա ալյումինի հումքը բերում են հեռավոր Ուրալից։ Բայց շուտով գործարանը ալյումին կտա տեղական նեֆելինային սիենիտներից, որոնք կարդյունահանվեն Հրազդանի շրջանում։

Էքսկուրսիայից հետո ընկեր Պետրոսյանն ասաց, որ գունավոր մետաղամշակումը սերտորեն կապված է քիմիական արդյունաբերության հետ։ Ալավերդու կոմբինատը հենց այդպես էլ կոչվում է՝ պղնձա-քիմիական։ Իսկ նեֆելինային սիենիտներից ալյումին ստանալու համար անհրաժեշտ է քիմիկոսների ու մետաղագետների միասին աշխատանքը։ Քիմիկոսները նեֆելինային սիենիտներից ստանում են կավահող։ Մետաղագետները կավահողից ստանում են ալյումին։

Դրա համար էլ որոշեցինք հաջորդ ճանապարհորդումը նվիրել Հայաստանի քիմիական արդյունաբերությանը։

**ԱՐԱՄ ՍԱՐԳՍՅԱՆ**

1960 թվականի օգոստոսի 14

Մեր ռեսպուբլիկայի առաջին ամենամեծ քիմիական ձեռնարկությունը Կիրովականի քիմկոմբինատն է։ Մենք այդ կոմբինատի հետ ծանոթացանք ձմռանը, երբ գնացել էինք Կիրովական։ Իսկ հիմա որոշեցինք լինել Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանում։

Այդ գործարանը լրիվ հզորությամբ սկսել է աշխատել 1940 թվականին։ Եվ հիմա նա տարեկան տալիս է մի քանի հարյուր միլիոն ռուբլու արտադրանք։ Կաուչուկից բացի, գործարանը տալիս

*է կալցիումի կարբիդ, կաուստիկ սոդա, թթվուտներ, ներկեր և սոսինձ։*

*Գործարանը վերջին տարիների ընթացքում արտադրում է սինթետիկ կաուչուկի մի նոր տեսակ, որը կոչվում է «Նաիրիտ» և որը ավելի էժան է, մշակման ժամանակ՝ անվտանգ ու շատ նման բնական կաուչուկի։*

*Բացի Կիրովականի Քիմկոմբինատից և Երևանի Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանից կան նաև քիմիական այլ գործարաններ։ Դրանք են՝ «Պոլիվինիլացետատը», ավտոդողերի, քիմիական, ներկերի և յուղերի, ռետինոտեխնիկական գործարանները։*

*ՍԵԴԱ ՄԻՐԶՈՅԱՆ*

**1960 թվականի օգոստոսի 28.**

*Իմ թեման է՝ Հայաստանի գունավոր մետաղամշակման և քիմիական արդյունաբերության ապագան։*

*Յոթնամյակի ընթացքում գունավոր արդյունաբերության ձեռնարկությունները կավելանան երեք անգամ։ Երկրաբանները կգտնեն գունավոր մետաղների նորանոր հանքաշերտեր։*

*Քիմիական գործարանները ևս կավելանան։ Նրանք կթողարկեն նոր տեսակի արտադրանք։ Կիրովականի քիմկոմբինատը անցյալ տարվանից արտադրում է արհեստական թանկարժեք քարեր։ Առաջիկա տարիների ընթացքում կսկսվի կապրոնի, արհեստական մետաքսի, բրդի և կաշվի, վիտամինների, դեղանյութերի արտադրանքը։*

*Եղբայրական Ադրբեջանից մեզ մոտ եկող բնական գազից քիմիական գործարանները կստանան նաիրիտ, պլաստմասսա, չկոտրվող ապակի, գործվածքեղեն, յուղեր, սոսինձ, բացախ և այլն։*

*ԿԱՐՈ ՕՀԱՆՅԱՆ*





*Լուսանկարները՝ Զ. ԲԾՏԻԿՅԱՆԻ*

# Քույրիկի փոխարեն

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱԶՅԱՆ



Ծամրիկը հիվանդ էր: Մայրը գնացել էր բժիշկ հրավիրելու: Տանը մնացել էր փոքրիկ Գոհարիկը:

— Ես պետք է դպրոց գնամ,— վերմակը մի կողմ հրելով ասաց Ծամրիկը:

— Իսկ ես չեմ թողնի: Մայրիկը ասաց, որ տաքություն ունես:

— Տուր ինձ ջերմաչափը, եթե տաքություն չունենամ, կգնամ դպրոց:

— Մայրիկը ասաց, որ Ծամրիկին չթողնես նույնիսկ անկողնում նստել: Պառկիր, հանկարծ մայրիկը կգա:

Ծամրիկը արագ մտավ վերմակի տակ, իսկ Գոհարիկը վախեցած բղավեց.

— Ջերմաչա՞փը:

Ծամրիկը զգուշությամբ հանեց ջերմաչափը:

— Երեսունութ և կես, դե դա ջերմություն չէ, ուրեմն դպրոց կգնամ:

— Ո՛չ, չես գնա:

— Իսկ ես խոսք եմ տվել դպրոցից չբացակայել,— ասաց Ծամրիկը:

— Միևնույն է, չես գնա:

* * *

Դասարանում երեխաները իրար էին խառնվել:

— Գոհարիկը ինձ մոտ կնստի,— ասում էր աղջիկներից մեկը:

— Ոչ, ինձ մոտ պետք է նստի,— ասում էր մեկ ուրիշը:

— Ես եկել եմ քույրիկիս փոխարեն և պետք է նստեմ նրա տեղը,— ասաց Գոհարիկը:

# ՀԱՅՐՈՆ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

1

Ամառն եկավ՝ կրակ ու բոց.
Հայրոն գնաց ամառանոց:
Տատը թխեց գաթա, լոխում,
Սարքեց փոքրիկ մի կերուխում:

2

Կերուխումի եռուն պահին
Լույսերն հանգան ամենևին.
Տատիկն ասաց. «Ա՛յ Հայրո ջան,
Խցանները տե՛ս ի՞նչ եղան:»

3

Հայրոն փնտրեց շիշ ու խցան,
Իսկ տնեցիք իրար անցան:
Զարմանք, ծիծաղ՝ հա՛-հա՛, հի՛-հի՛
Վա՜յ, խցանն էլ սա չգիտի...





Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

—Տե՛ս է. Ա-ն ու Բ-ն դեռ չի կարողանում ջուկել, դպրոց է եկել,—ծիծաղեցին տղաները:

Դասղեկի ներս մտնելուն պես՝ բոլորը լռեցին:

Մեծ եղավ նրա զարմանքը, երբ տեսավ Ժամրիկի նստարանին նստած Գոհարիկին:

—Իսկ ու՞ր է Ժամրիկը,—հարցրեց դասղեկը:

—Հիվանդ է,—նստած տեղից պատասխանեց Գոհարիկը:—Նրա փոխարեն ես եմ եկել:

—Խոսելու ժամանակ պետք է կանգնել,—զգուշացրեց դասղեկը:

Բոլորը ծիծաղեցին:

—Ուրեմն դու եկել ես քույրիկիդ փոխարե՞ն:

—Այո՛: Չէ՞ որ քույրիկս խոսք է տվել երբեք չբացակայել:

—Շատ լավ, շատ լավ, իսկ դասը սովորե՞լ ես նրա փոխարեն:

—Այո՛:

—Անունդ ի՞նչ է:

—Գոհարիկ:

—Գոհարիկ, հապա կարդա դասը:

Գոհարիկը վերցրեց գիրքը և ոտքի կանգնեց:

—Կարդալիս չեն կանգնում,—շշնջաց կողքի նստածը:

—Ապրես, Գոհարիկ, լավ կարդացիր,—ասաց դասղեկը,—ես քեզ «հինգ» եմ նշանակում, իսկ հիմա վերցրու պայուսակը և գնա տուն, այսուհետև քույրիկիդ փոխարեն չգաս դպրոց: Դու դեռ փոքրիկ ես, ա՛յ, քիչ էլ կմեծանաս և իսկական դպրոցական կդառնաս: Քույրիկիդ բացակայությունը ես հարգելի կհամարեմ, մինչև նրա առողջանալը:

Ամենից շատ զարմացել էր Գոհարիկի կողքին նստած տղան:

—Այ քեզ հրաշք,—ասում էր նա դասամիջոցին.—այդ աղջիկը բոլորովին ուրիշ էջի վրա էր կարդում այսօրվա դասը:

# ԱՄԱՌԱՆՈՑՈՒՄ

4

Կարտոֆիլ էր մաքրում Հայրոն,
Հեռվից խնդաց փոքրիկ Մարոն.
— Կնեպ-մնեպ՝ մի մեծ տակառ,
Իսկ ճաշինը՝ երկու պատառ...

5

— Ինչ պատռել ես, ինքդ կարիր,
Թե չէ մի գործ կարգին չարիր,—
Տատիկն այսպես թոռանն ասաց,
Թել-բան տվեց, գործի գնաց:

Էհ,.Հայրոն էլ թելեց, կարեց,
Ու տեսեք, թե ինչեր արեց...
Կարել էր նա ծունկը թևին,
Իսկ բազմոցը՝ իր հետևին:



6

Ուզեց հագնել նոր շալվարը,
Առավ արդուկն, առավ լարը,
Միացրեց՝ չի տաքանում.
— Ո՞նց թե,—ասաց,—չեմ հասկանում:

# Նոր վերյուրու Գրածի Ուդիս

Աշոտի հետ դասընկեր էինք: Սովորում էինք վեցերորդ դասարանում: Շատ հաճախ էինք այցելում միմյանց տուն, դաս պատրաստելու:

Մարտ ամիսն էր: Աշոտենց տանը դաս էինք սովորում: Նուբար տատը մեզ հյուրասիրեց մածնով: Մածունը շատ անհամաջուր էր և ավելի շատ կաթի էր նմանվում:





Նկ. Փ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Մածունը լավ չի կպել, Նուբար տատի,— ասացի ես:

— Հա, որդիս, ինչ անում եմ կարգին մածուն չի ստացվում: Մեր կաթնեղենին աչքով են տվել, էն էլ երկու աչքով: Մինչև մի գիր անել չտամ, մեր մածունը մածուն չի դառնա:



Տատին եկավ, նայեց՝ ասաց.
— Ի՞նչ ես արել, այ դու շշմած.
Միացրել ես ռադիոգծին...
Մի տես սրա արած գործին:

Հայրոն արեց՝ ինչ որ պետք էր,
Բայց թե դա էլ թողեց հետքեր...
Նոր բազմոցից ծուխ է ելնում.
Տաք արդուկն է այդպես անում...

7

Ափսեները մի օր բերեց
Շխկշխկոցով տաշտը լցրեց:
Բայց ինչ լվալ. բան չմնաց,
Ուղիղ կեսը ջարդվեց գնաց:

Այսպես, փորձանք շատ պատահեց,
Բայց շատ բան էլ միտը պահեց.
Ու մեր Հայրոն այդ օրվանից
Էլ չէր փախչում գործ ու բանից:



— Գիր անելով մածուն կպնդի՞, — ծիծաղելով հարցրինք մենք։

— Կպնդի, որդիներս, կպնդի։

— Իսկ ձեր կովը օրական քանի՞ լիտր կաթ է տալիս, տատի,— նորից հարցրի ես։

— «Նշանս» օրական տալիս է չորս—հինգ լիտր։

— Նուբար տատի, չի լինի՞, որ գիր անել տաս, կովն իր կաթն ավելացնի, իսկ ինչ վերաբերում է մածունին, մենք Աշոտի հետ այնպես կանենք, որ պնդի։

— Իհարկե, կարելի է։ Գիրն էնենց մի բան է, որ մեծ զորություն ունի։ Բուժում է հիվանդներին, հիմարներին խելոքացնում, խելոքներին հիմարացնում։ Նայած, թե ի՞նչ ես խնդրում գրբացից։

Նուբար տատի հետ պայմանավորվեցինք, որ գրբացը գիր անի, կովն իր կաթը ավելացնի։ Հաջորդ օրը Նուբար տատը ծուռտիկ տառերով գրված մի թուղթ բերեց գրբացի մոտից։

— Էդ ի՞նչ գիր է, որ ինչ զորություն ունենա եթե մենք այդպես գրենք, մեկից ավելի գնահատական չենք ստանա,— ասացի ես։

— Համբերեք, որդիներս, համբերեք։ Ամեն ինչ հետո կիմանաք։

Նուբար տատին ծուռտիկ տառերով գրված թուղթը ուղիղ միջից կիսեց։ Կեսը խոտով կերցրեց կովին, իսկ մյուս կեսը կարեց շորի մեջ ու կապեց կովի եղջյուրին, հետո էլ ավելացրեց. «Նշան ջան, համ եմ ավել, գիր անել ավել։ Կեսը

Նկ. Կ. ՀԱՅԱԴՈՐՅԱՆԻ



Ամռան վերջին մայրը եկավ
Որդուն կտրի վրա տեսավ.
— Ո՞ւր եք հանել իմ զավակին...
— Նորոգում է ռադիոն, տիկին...

Մյուս օրն էլ՝ տեսավ՝ որդին
Պրիմուսն է վառել կարգին,
Որ իր քաղած լոբին եփի,
Գոռաց. — Ձեռքդ մի կեղտոտի...

Իսկ կեսուրին, թե՝ անգութ ես...
Դու ուզում ես լոբի՞ ուտես,
Ինքդ վառիր, ինքդ եփիր,
Երեխայիս գործի մի դիր։

Կեսուրն ասաց. — Ուշքի արի,
Էդպես պահես հազար տարի,
Մարդ չի դառնա տղադ երբեք,
Թե գործ չանի, ինչի՞ է պետք։

Հարսը ելավ խիստ բարկացած
Որդուն առավ ու տուն գնաց,
Իսկ պիոներ Հայրապետը
Շատ գիտելիք տարավ հետը։

Ամեն բանից գիտեր մի քիչ.
Գիտեր՝ ինչ է խցան, հաշվիչ,
Մեխել, ներկել, կարել, տաշել,
Նույնիսկ՝ ռադիո լարեր քաշել...

կերար դու խոտով, կեար պտղից պանի շորով։ Շատ տուր, շատ տուր, մեզ կաթ տուր, տղաներին կարագ տուր»։

Անցել էր երկու օր, ինչ կովը խոտի հետ կերել էր թղթի կտորը։

Նուբար տատին կաթնամանով տուն էր վերադառնում շատ զվարթ։

— Հը՛, Նուբար-տատի, ինչքա՞ն է ավելացել կաթը,— հարցրինք մենք։

— Հիմարը երևի չի իմացել, թե խոտի հետ ինչ է կերել։ Փոխանակ կաթն ավելացնելու, ուղիղ կեսը պակասեցրել է, չնայած էս երկու օրը կաթից հորթին բաժին չեմ հասցնում։

— Ա՛յ քեզ գիր,— ասինք մենք։— Երևից երևում է, որ նրա գրածը կովը չի հասկացել։ Բայց տատի, մի սպասի, հիմի մենք պարզ, լավ ձեռագրով կգրենք և նա չի մերժի։

Պայուսակիցս հանեցի կարմիր մատիտ ու մեծ-մեծ տառերով գրեցի. «Նշան», տատիկին մի նեղացրու, շատ կաթ տուր։ Վերջացրի ու թուղթը խնամքով ծալած մեկնեցի Նուբար տատիկին։

— Տուր, որդիս, գուցե քո գրածը խելքով լինի։ Հիմի ի՞նչ անեմ, տամ կովի՞ն, թե ինձ մոտ պահեմ։

— Էդ գրածը քեզ մոտ պահի,— ասինք մենք և գրքներս վերցրած, տանից դուրս եկանք, ծիծաղելով գնացինք դպրոց։

Երկու օր հետո անցնում էի փողոցով, երբ Նուբար տատը, շատ ուրախ տրամադրությամբ, ինձ կանգնեցրեց ու ասաց.

— Որդի, գրածդ թղթից շատ գոհ եմ, շատ խելքով թուղթ գրեցիր, քեզ համար թաժա կարագ եմ պահել, գնանք կեր։

— Այդ ի՞նչ է պատահել, տատի,— հարցրի ես։

— Ձեր տված «Նշանը» կաթը միանգամից երկու լիտրով ավելացրել է։ Ինչո՞ւ, որդիս, դու գրածով չես զարմանում։ Բայց շատ եմ խնդրում, մի էդ ձեզ թուղթ էլ գրեք աղջկա և մեր հարևանի կովերի համար։ Աղջկա կովի անունն է «Ջեյրան», իսկ հարևան Սոֆենց կովի անունն է «Հերայ», իրենք էլ շատ հանգիստ, խելոք կովեր են։ Ա՛յ, թե մեր գյուղի բոլոր կովերի համար թուղթ գրես հա՞, ու ամենքն էլ երկու լիտրով կաթն ավելացնեն, տե՛ս, թե ինչքա՞ն կաթ կավելանա գյուղում։

— Տատի՛, թղթեր կարելի է շատ գրել, բայց նրանք կաթը չեն ավելացնի։

— Կավելացնեն որդիս, կավելացնեն։ Բա ես իմ աչքով տեսածին չհավատա՞մ։

Հարկե, աչքով տեսածին պետք է հավատալ։



Նուբար տատի, դե լսիր պատմեմ գաղտնիքը,— ծիծաղս զսպելով ասացի ես։

Երբ «Նշանին» կերցրիր փոքրիկ թղթի կտորը ու կեռն էլ կապեցիր ներքևից, ես Աշոտի հետ պայմանավորվեցի բերնից զատոնի կողի կերը պոկեցինք, որից «Նշանը» երկու անգամ քիչ կախվեց։ Իսկ իմ գրածի ժամանակ, ընդհակառակը, կողի կերը ավելացրինք, որից էլ ավելացավ կողի կախվածությունը։

Ա՛յ թե ինչ,— մատը բերնին դրած ասաց Նուբար տատը,— նոր եմ գլխի ընկնում, թե ինչու էր գրչացը գանգատվում, որ էլ իրեն չեն ճանաչում, մատը մարդ չի գալիս գիր ...։ Վերջում որդիս, գրածդ թուղթը, ծոցիդ թուղթը մանկալ, ասաց Նուբար տատը.— ինչպես տեսնում եմ, ոչ թե գիրը, այլ կերն է ավելացնում կախը։

ՄԱՔՍԻՄ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

(Մասիսի շրջան, Մասիսի ավանի միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ)



# Նամակը

Լ. ԲԱԽՆԱՉՅԱՆ

Նկ. Ժ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գիտեք, մեր Շողիկն արդեն դպրոց է գնում: Ամեն օր մի նոր տառ է սովորում: Ուրախ-ուրախ տուն է ընկնում ու ասում.

— Պապիկ ջան, այսօր էլ «Զ» տառը...

Ու պապի հետ նոր սովորած տառով նոր-նոր բառեր էին կազմում:

Մի օր էլ Շողիկը որոշեց նամակ գրել մորաքրոջը:

Պապը նրան ծրար տվեց, բացատրեց, թե որ տողի՞ վրա ինչ պիտի գրի:

Նստեց Շողիկը, գրեց, ջնջեց, նորից գրեց, էլի չհավանեց, պատռեց և վերջապես իր ուզածի նման եղավ:

Թող տեսնի մորաքույրը, թե ինչքան գեղեցիկ է գրում Շողիկը:

— Տե՛ս, պապի՛, վերջացրի...

— Ապրե՛ս, Շողի՛կ, մյուս կողմն էլ նկար արա:

Ու Շողիկը գունավոր մատիտներն հանեց, մի գեղեցիկ տոնածառ նկարեց, վրան հազար գույնի խաղալիքներ...

— Այ թե կուրախանա մորաքույրը... Տե՛ս, այսպե՛ս, պապի՛: Տիկնիկը՝ փոստատարն է, (նամակը Շողիկը դրեց տիկնիկի գիրկը), իսկ ես մորաքույրը:

— Արուսյակ, նամակ ունես, — կասի փոստատարը:

— Ումի՞ց է, քեռի՛ Ասատուր, — ծիծաղելով կասի մորաքույրը:

— Շողիկից:

— Շողիկի՞ց: Չե՞ս սխալվում, քեռի՛ Ասատուր, ես այդպիսի ծանոթ չունեմ:

— Չէ՛, ընկե՛ր Արուսյակ, չեմ սխալվում, նայի՛ր...

— Ա՜, ջանի՜կս, իմ քրոջ փոքրիկ բալիկի՜ց է...

... Մյուս օրը առավոտյան Շողիկը դպրոց գնալուց առաջ որոշեց ծրարները տանել ու փոստարկղ գցել:

Եվ երբ ծրարները ձեռքին ուզում էր դուրս գալ, պատկերացնում էր, թե ով եկավ:

— Այո, այո մորաքույր Արուսյակը:

Ու երբ գրկեց Շողիկին ու նայեց նրա դեմքին, վախեցած դարձավ պապի կողմը.

— Հայրի՛կ, ի՞նչ է պատահել Շողիկին:

Պապը ժպտաց:

— Տե՛ս, ինչ կա ձեռքին...

— Տեսնեմ, Շողիկ ջան, նամա՞կ, դու արդեն գրել գիտե՞ս, դե տուր տեսնեմ...

Շողիկը ծրարը սեղմեց կրծքին:

— Ախր, ես ուզում էի անպայման փոստարկղ գցել...



# ՄԱՐԱԼԸ...

ՖԵԼԻՔՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Ամեն անգամ, երբ խոսք է բացվում որսորդության մասին, աչքերիս առաջ անմիջապես երևում է պապս՝ իր անբաժան հրացանն ուսին, արջի մորթուց կարած փափախով ու բարի ժպիտը դեմքին։

Երեկոյան, երբ տուն էի բերում գառներին, դեռ մի բան չկերած, վազում էի պապիս մոտ ու նստում թախտի վրա։ Մինչև իմ գալը իր տեղն արդեն գրաված էր լինում Մանանը՝ մեր հարևանի փոքրիկ աղջիկը, իմ մանկության ընկերուհին։

Երկար բախանձելուց հետո, վերջապես, հաջողվում էր համոզել պապիս, որ նա «քրքրի իր հիշողությունների տոպրակը» ու մի բան պատմի մեզ համար։

Մի օր էլ, սովորականի պես երբ մոտեցա պապիս, նա քիչ նեղացած ձայնով ասում էր Մանանին.

— Ա՛յ արջի կծած, հերիք եղավ է՛լի. հոգիս հանեցիք, պատմել տալով,— և ինձ իր կողքին տեսնելով ավելացրեց,— ը՛հը՛, հիմա Նունիկս էլ մի կողմից կսկսի։ (Նունիկը իմ ավելորդ անունն էր, որ տատս դրել էր, երևի, կարմիր թշերիս համար)։

Պապս լռում էր, Մանանը էլ չհամբերելով կամացուկ ասաց.

— Պապի ջան, են մարալի մասին պատմի, հա՞...

— Դե լավ, ինչպես տեսնում եմ ձեզանից պրծնողը չեմ,— ժպտաց պապս և շուռ գալով մեծ քրոջս կողմը՝ ավելացրեց.— Սոֆի ջան, մի քիչ ջուր տուր ինձ ու դու էլ նստիր մեզ մոտ։

Ջուրը խմեց, մաքրեց ծխից դեղնած բեղերը ու կպցնելով հանգած չիբուխը, սկսեց.

«Մի տարի շատ խիստ ձմեռ էր։ Նա՛ եմ ասում, որովհետև այդպիսի ձմեռ մեր կողմերում երբեք չէր եղել։

Հա, այդ ձմռանը տատդ հանկարծ հիվանդացավ։ Էլ դեղ չմնաց, որ չխմեր, էլ ճար չմնաց, որ չանեի, բայց բանի գնում, ավելի էր վատանում, ջերմությունը քառասունիննից չէր իջնում։



— Ա՛յ մարդ, բառասունհինգ ո՞նց կլինի, երեսունհինգն էր,— ծիծաղելով միջամտեց տատս:

— Դե ես հիմա էլ ջերմաչափից գլուխ չեմ հանում,— նեղանալով, որ խոսքը կտրվեց, ասաց պապս ու շարունակեց:— Էն էի ասում, որ սա հիվանդ էր: Մի օր էլ թե՝ Հայկազ ջան, սիրտս նապաստակի միս է ուզում:

«Սրտի ուզածը մերժել չի լինի,»— մտածեցի ես ու հրացանը վերցնելով, դուրս եկա:

Ձյուն էր եկել, ի՜նչ ձյուն: Հիմիկվա ձյո՞ւնն է, որ երեխեքը մի լավ ձնագնդի չխաղացած՝ վերջանում է: Մինչև ծնկներս խրվելով գնում եմ, ու աչքս նապաստակի հետք է ման գալիս: Երկար ման չեկա, որովհետև կեր չլինելու պատճառով նրանք ամբողջ օրը գյուղի շրջակայքում թափառում էին: Գտա նենց նոր անցած մի մեծ նապաստակի հետք ու գնացի:

Գնացի, գնացի, հասա ես մեր դիմացի սարը: Ոտքերս արդեն սառել էին: Չորս կողմս աչք շլացնող ձյուն, բազմաթիվ հետքեր, բայց ոչ մի կենդանի շունչ: «Էհ, այսօր պառավս դժվար թե նապաստակի միս ուտի»— մտածեցի ես ու որոշեցի սարի մյուս կողմով ետ դառնալ:

Դեռ չէի բարձրացել սարը, երբ հանկարծ մի նապաստակ թափ առած ելավ առաջս ու ինձնից մի տասը քայլ հեռու կանգնեց: Հիմի սա հնում է, ո՞նց է հնում: «Երևի սա իմացել է, որ ինձ նապաստակ է պետք, դրա համար է վազել»— մտածեցի ես ու նշան բռնեցի: Արդեն պատրաստվում էի սեղմել ձգանը, երբ այդ սատանան վազեց դեպի ինձ ու ոտքերիս մոտով փախավ: Արյունը գլուխս խփեց: Ո՞նց թե, դու քո շիկ հալով ինձ խաբե՞ս: Անմիջապես նշան բռնեցի ու երկու փողն էլ իրար հետևից դատարկելով ցած իջա: Նապաստակը փախել էր՝ ձյան վրա թողնելով արյան կարմիր բծերը: «Ես հեռու չեմ գնա, անտառում կսպասեմ քեզ» կարծես գրել էր նա այդ բծերով: Երբ հասա անտառ, մի հսկա եղևնու տակ հանդիպեցի Սերոյին: Կանգնել ու նեղացած թափ էր տալիս գլխի ձյունը: «Էս անտեր սկյուռները էլ մարդու նեղացնել գիտեն,— կարծես հայացքիս պատասխանելով ասաց նա,— կանգնեցի որ չիբուխս կպցնեմ, մեկ էլ, բը՜մփ, գլխիս թափվեց ծառի ամբողջ ձյունը»:

Ինձ դատարկաձեռն տեսնելով, նա զարմացավ:

— Ի՞նչ է, նոր ե՞ս տանից դուրս եկել:

— Հա,— չուզենալով գլխիս եկածը պատմել, պատասխանեցի ես, պառավս նապաստակի միս ուզեց, թե չէ դուրս եկողը չէի...

— Դե որ այդպես է, ետ դառնանք,— ասաց նա ու վերցնելով քիչ հեռու դրած գոտին, որի օղերից կախված օրորվում էին երկու զույգ խոշոր նապաստակներ, շարունակեց.

— Հալալ ախպերաբաժին կանենք, Հայկազ ջան, հեչ մի...

Խեղճի խոսքը բերանում մնաց:

Կողքի ձորից լսվեց մի աղեկտուր զռոց, որին հետևեց ինչ-որ գազանի սոսկալի ոռնոցը: Երկուսս էլ հարցական նայեցինք միմյանց ու ոտքերումս ինչքան ուժ կար, ձայնի կողմը վազեցինք.

Նոր էինք հասել ձորը, երբ մեր առաջ բացվեց մի տխուր տեսարան...

Առվի մոտ՝ ձյան մեջ թավալվում էին երեք կենդանի: Երկու սոված գայլ բռնել էին անպաշտպան մարալի կոկորդից ու, չնայած վերջինիս գործադրած անօգուտ ջանքերին, չէին պոկվում նրանից:

Մտածելու ժամանակ չկար: Երկուսս էլ գրեթե միաժամանակ կրակելով, մոտ վազեցինք:

Գայլերից մեկը անշնչացել էր, իսկ մյուսը մեզ ցույց տալով իր արնոտ ժանիքները, հուսահատ ճիգ էր անում փախչելու համար:

Մինչև Սերոն իր հաշիվները կվերջացներ վիրա-

վոր գայլի հետ. ես մոտեցա մեռնող մարալին...

Կրծքից ու կոկորդից առատորեն բխում էր արյունը, իսկ ամեն նոր շիթը կարծես նրա կյանքի վերջին րոպեներն էր հաշվում...

Սերոն ձեռքը տարավ դանակին, բայց ես չթողեցի...

Մարալը բացեց խամրող աչքերը, մի տխուր հայացք գցեց մեզ վրա ու փորձեց վեր կենալ: Ուժերը դավաճանեցին: Գեղեցիկ գլուխը թեքվեց անտառի կողմը, խզված ձայնով կամաց բառաչեց...

Ոտքերը շարժվեցին ու, մինչև մենք զարմացած իրար էինք նայում, այնտեղից դուրս եկավ մարալի ձագը...

Մեզ տեսնելով մի պահ վարանեց, ապա դանդաղ առաջ եկավ:

Ես քաշեցի Սերոյի թևից ու քիչ հեռացանք:

Ձագը մոտեցավ մորը. հոտոտեց արյունոտ ձյունը ու մռութը լիզեց նրա սառչող դունչը...

... Կենդանու անմխիթար բնազդով հասկացավ կատարվածը ու թարթեց աչքերը:

Արցունքի երկու խոշոր կաթիլներ գլորվելով նրա փոքրիկ աչքերից ընկան մոր կրծքին:

Ես չդիմացա ու երեսս շուռ տվի... Ընկերոջս աչքերն էլ էին թրջվել...

Սերոն եկավ գյուղ, մի երկու հոգի վերցնելու, իսկ ես նստելով առվի մոտ, փորձեցի պատկերացնել կատարվածը:

Մի բան պարզ էր, որ նրանք եկել էին առվից ջուր խմելու: Մարալը ձագին թողել էր թփերի մեջ և իջել էր առվի մոտ ստուգելու իրենց անվտանգությունը: Բայց քանի որ մարալի հետքերը առվին չէին հասել, նշանակում է, նա ջուր չէր խմել...

Գայլերը նրան հանդիպել էին պատահաբար, որովհետև նրանց հետքերը ուրիշ կողմից էին գալիս: Մարալը հասկացրել էր ձագին, որ դուրս չգա ու փորձել էր պաշտպանվել (այդ էր վկայում վիրավոր գայլի կտրված ժանիքը): Բայց մինչև մենք կհասնեինք, նա այդպես անհավասար կռվով զոհ էր դարձել իր մայրական զգացմունքներին...

Մնացածը արդեն մենք ինքներս տեսանք: Չանցած մի ժամ՝ երեք հոգու հետ եկավ Սերոն: Երկուսը վերցրին սպանված գայլերին, Սերոն ու էլի մի հոգի մարալին տարան, իսկ ես վերցրեցի իմ ու Սերոյի հրացանները:

Մինչև սարը մարալի ձագը մեզանից չբաժանվեց: Ինչքան փորձեցի բռնել, չհաջողվեց:

Փախչում էր մի քանի քայլ ու նորից գալիս մեր հետևից:

Էս մեր սարի վրա նա կանգնեց ու էլ չեկավ...

Արդեն հասել էինք գյուղ, երբ ինչ-որ մի ներքին ուժ ինձ ստիպեց ետ նայել:

Մայր մտնող արևի շողերից ավելի պարզ էր երևում սարի գծագրությունը:

Իսկ նրա վրա, որպես մի սրանիշի արձան, կանգնել էր որբ ձագը...

Տուն եկա, տատիս տվեցի Սերոյի նվիրած նապաստակները ու պատմեցի այդ ցավալի դեպքը»:

Պապս վերջացրեց իր պատմությունը, նայեց ինձ ու Մանանին, շուռ եկավ մյուս կողմն ու նեղացած ասաց.

— Դե արի, համ խնդրում են՝ պատմի, հա պատմի, համ էլ ամբողջ տնով լաց են լինում...



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Ո՞վ հավաքի խաղալիքները

ԱՆՆԱ ՄԱԼԻՆՍԿԱՅԱ

Ի՞նչ եք կարծում, ո՞վ պիտի հավաքի ձեր խաղալիքները, երբ երեկոյան պառկում եք քնելու, իսկ ձեր խաղալիքները մնում են շաղ տված հատակին:

Կարծում եք, որ դա կանե՞ն մայրի՞կը, տատի՞կը, կամ մորաքու՞յրը:

Այդպես չի մտածում Ադամյոկը: Չէ՞ որ մայրիկը շատ քիչ ժամանակ ունի, էլ ե՞րբ հավաքի քո խաղալիքները:

Շատ անգամ է մայրիկը այդ մասին ասել Ադամյոկին:

Բայց ա՛յ զարմանալի բան: Ամեն անգամ ստացվում է այսպես.

Ադամյոկը պառկում է քնելու, իսկ խաղալիքները մնում են ցրված սենյակով մեկ: Երբ առավոտյան Ադամյոկը զարթնում է, դրանք բոլորը էլի իրենց տեղում են, ստվարաթղթե տուփի մեջ:

Ո՞վ հավաքած կլինի:

«Չէ, դրանք մայրիկը չի հավաքում,— մտածում է Ադամյոկը:— Դա անում է պստլիկ մարդը, որ ապրում է հեքիաթների գրքում: Ցերեկը նա չի երևում: Նա գիշերն է աշխատում, երբ ես քնում եմ: Ա՛յ, հենց այդ ժամանակ սկըսվում է նրա աշխատանքը: Երևի ամբողջ գիշեր, հատակին սողալով, աշխատում է, չարչարվում: Նա է հավաքում, տուփի մեջ դասավորում գույնզգույն գնդիկները, մերթ շերտավոր գնդակն է գլորում-գցում տուփը, մերթ իրար վրա շարում խորանարդիկները: Այդ պըստըլիկ մարդը աշխատում է մինչև լուսաբաց, իսկ առավոտյան խաղալիքները էլի իրենց տեղում են լինում, և ես նորից կարող եմ խաղալ»:

Մի անգամ երեկոյան մայրիկը ասաց.

—Ոնց կուզես արա, Ադամյոկ: Ես այսօր ժամանակ չունեմ, ինքդ կհավաքես խաղալիքներդ:

«Ես չեմ հավաքի,— մտածեց Ադամյոկը,— իմ պստլիկ մարդը կհավաքի դրանք»:



Նկ. Կ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ

Ադամյոկը հանգիստ պառկեց քնելու:

Ադամյոկը առավոտյան զարթնեց և գնաց, որ խաղա: Իսկ խաղալիքների տուփը դատարկ էր: Ոչինչ չկար մեջը՝ ո՛չ խորանարդիկները, ո՛չ գնդիկները, ո՛չ նոր բեռնատարը:

Ի՞նչ աներ: Ադամյոկն ուզում էր գնդիկներով խաղալ: Սողաց Ադամյոկը, հատակից հավաքելով գնդիկները և միայն երեկոյան գտավ վերջինը:

«Ա՛յ,— մտածեց Ադամյոկը,— ես ամբողջ օրը փնտրեցի իմ խաղալիքները, իսկ խաղալու ժամանակ չեղավ...»

Մյուս օրը Ադամյոկը որոշեց խաղալ նոր բեռնատարով: Նա սկսեց փնտրել, նայեց սեղանի տակ, նայեց աթոռի տակ, նայեց պատուհանի տակ, ոչ մի տեղ չկար: Բեռնատարը միայն երեկոյան գտնվեց մահճակալի տակից: «Ա՛յ, հիմա արդեն կգնամ կքնեմ,— մտածեց

Ադամյոկը.— Իսկ բեռնատարով խաղալ չեմ կարողանա»:

Իսկ երրորդ օրը Ադամյոկը սկսեց որոնել իր կարմիր շերտավոր գնդակը: Որոնեց այգում, որոնեց ծաղկամարգի մեջ, բայց գնդակը չկար ու չկար: Իսկ երեկոյան, երբ Ադամյոկը հոգնել էր արդեն, գնդակը գտնվեց: Սեղանի տակ էր ընկել:

Հիմա Ադամյոկը էլ հույս չի դնում պստլիկ մարդու վրա: Երեկոյան ինքն է ամեն օր խաղալիքները հավաքում լցնում տուփի մեջ:

Մեկ-մեկ էլ նրան օգնում է մայրիկը:

Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



# ՄԵՐ ԲԱԿԻ ԱՐԱԳԻԼԸ

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Մեր տունը գտնվում էր սարահարթանման այգու մեջ, շրջապատված բարդիներով, որոնք ձգվել էին դեպի վեր և կանաչ պարիսպ էին դարձել մեր այգու և տան համար:

Այդ բարդիներից մեկի գագաթի ճյուղերի վրա արագիլը իր բույնն էր հյուսել: Թե քանի՞ տարի էր նա իր բույնը դրել մեր բարդու վրա, այդ ես չգիտեմ, բայց ամեն գարնան ես տեսնում էի, թե ինչպես են արագիլները հոգնած և ուժասպառ գալիս, իջնում իրենց բույնը: Թե որտեղի՞ց էին գալիս նրանք, որտե՞ղ էին ձմեռում, ոչ ոք չէր ասում, իսկ ես շատ էի ուզում իմանալ այդ մասին:

Գարնանային առավոտներից մեկն էր. արևը հաճելի ջերմացնում էր մարդկանց, ծառերը բողբոջել էին, դաշտը կանաչին էր տալիս, ամենուրեք զգացվում էր գարնան կենսաբեր բուրմունքը: Ծերունիները դուրս էին եկել տներից ու պատերի տակ նստած զրուցում էին, իսկ երեխաները հավաքվել էին փողոցում, խաղում էին, աղմկում: Հանկարծ ծերունիներից մեկը ձայնեց.

— Երեխե՛ք, արագիլնե՛րը, արագիլները գալիս են...

Բոլորս նայեցինք այն կողմը, որտեղ ցույց տվեց ծերունին: Իսկ հեռվում երևացին արագիլները, որոնք լայն թևերը տարածած դանդաղ թափով գալիս էին մեր գյուղի կողմը:

— Նայեք, էն մեկը կարծես թե հիմա վայր կընկնի,— բղավեց Գագիկն ու վազեց դեպի դաշտ: Նրա հետևից վազեցինք բոլորս:

Գյուղից ոչ հեռու աշնանացան ցորենի արտի

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

մեջ արագիլներից երկուսը վայրէջք էին կատարել. Նրանցից մեկը ընկած էր գետնին՝ թևերը լայն տարածած, իսկ մյուսը թափահարում էր թևերը, թռչում ու նորից իջնում էր թևատարած ընկած արագիլի մոտ...

Տղանե՛ր, երևում է, էն մեկը իրեն վատ է զգում:

— Վա՜յ, վա՜յ, տեսեք, ո՞նց է թփրտում,— ասաց Վանիկը ու առաջ ձգվեց:

— Սպասե՛ք,— ասաց նրան Գուրգենը,— մի քիչ համբերե՛ք, տեսնենք, ի՞նչ է լինելու:

— Տղե՛րք, եկեք գնանք օգնենք, չե՞ք տեսնում, տանջվում է,— նորից ձայնեց Վանիկը ու էլ չլսելով ոչ ոքի, վազեց արագիլների մոտ: Առողջ արագիլը թռավ, իսկ գետնին ընկածը ուժեղ թափահարեց թևերը, փորձեց թռչել, բայց նորից փռվեց գետնին: Բոլորս վազեցինք դեպի արագիլը, որ ընկած էր գետնին թևատարած և թախծոտ աչքերով կարծես օգնություն էր աղերսում մեզանից: Մյուս արագիլը ոչ մի բանով չկարողացավ օգնել ընկերոջը. հուսահատ կափկափում էր կտուցը, կռկռում, մեկ արագ իջնում էր ցած, մոտենում նրան, մեկ էլ թռչում էր վեր: Այլևս չհամբերեցի: Առաջինը ես հասա, գրկեցի-բարձրացրեցի արագիլին և դանդաղ տղաներին տվեցի.

— Տղանե՛ր, շուտ տուն հասցնենք, երևի պապս մի բան կանի, դե շուտ վազենք գյուղ:

Բոլորս գնում էինք համարյա վազելով և այնքան էինք տարվել հիվանդ արագիլին փրկելու մտքով, որ ոչ մեկս չէր նկատել, թե ինչպես է առողջ արագիլը դանդաղ թռչելով հետևում մեզ: Գյուղի միջով անցնելիս, թաղի բոլոր երեխաները վազում-միանում էին մեր խմբին:

Վերջապես արագիլին հասցրինք մեր տուն: Հենց ցած դրինք, սկսեց ուժեղ թփրտալ ու մեկ էլ թևերն ու ոտքերը ձգելով, աչքերը փակեց:

— Վա՜յ, սատկե՞ց, սատկե՞ց,— հուսակտրված բղավեցինք բոլորս:

— Չի՛ սատկել, բալե՛ք ջան, չի՛ սատկել,— առաջ գալով ասաց պապս ու չոքեց գետնին փռված արագիլի կողքին:

Պապս մանրամասն սկսեց ստուգել արագիլին:

— Ա՜յ, թե ինչն է խեղճ կենդանուն տանջել,— ասաց պապս, ցույց տալով արագիլի վզի տակ գոյացած ուռուցքը:

Եթե մի քիչ էլ ուշ հասցնեինք, անպայման կսատկեր. էս խոցը կխեղդեր նրան: Մինա՛մ, շո՛ւտ, էն սուր դանակը տուր ու մի շոր փալաս, խանձուր արա,— դիմեց նա տատիս, որը մեզ պես վշտացած էր արագիլի վիճակով: Պապս դանակով զգուշորեն պատռեց ուռուցքը և վերքի վրա այրված լաթի խանձուր դրեց: Արագիլը կարծես մահվանից կենդանացավ, աչքերը բաց արեց, ուզեց ելնել, փորձեց բարձրանալ, բայց չկարողացավ:

— Դե՛, երեխե՛ք, հեռացե՛ք, թողե՛ք թող հանգստանա: Մինա՛մ, դու էլ մի քիչ ջուր ու կեր դիր առաջը, թող կուտի:

Բոլորս դուրս եկանք տնից, բայց էլ ի՞նչ խաղալ, էլ ի՞նչ աղմկել. լուռ ու տխուր շարվեցինք մեր պատի տակ, ու ամեն մեկս մտահոգված էր, թե արդյոք կառողջանա արագիլը:

Բավական ժամանակ էր անցել, արևը թեքվել էր դեպի արևմուտք: Մեկ էլ տեսանք մեր բարդու վրայի բնին նստեց մի արագիլ, իջավ ու սկսեց կտկտացնել, կտուցով ուղղել իր բույնը: Նա մենակ էր... Վրա հասավ երեկոն, բոլոր երեխաները ցրվեցին իրենց տները, ես էլ գնացի քնելու: Բայց քունս չէր տանում, ականջս միշտ բնի վրա նստած արագիլի կտկտոցին էր: Նա աղեկտուր ձայնով իր ընկերոջն էր կանչում...

Կես գիշեր էր, հանկարծ բոլորս արթնացանք մի ուժեղ աղմուկից. հիվանդ արագիլը ոտքի էր կանգնել, թափահարում էր թևերը, կափկափում էր կտուցը:

— Էս մեր արագիլի ընկերն է, Արմեն, նա էլ լսեց, հանգիստ չի մնա: Եթե կարող ես մի կերպ դիր բնի վրա,— ասաց տատս հայրիկիս,— թե չէ մեզ հանգիստ չի թողնի, բա՛մ ես, էն մեկն էլ էնտեղ է տանջվում:

Կես գիշերին հայրս վեր կացավ, գրկեց արագիլին ու մեծ զգուշությամբ բարձրացավ ծառը, նստեցրեց նրան բնի վրա: Մեր տանն էլ ոչ ոք չքնեց, բոլորը լսում էին, թե ինչպես քաղցր ու երջանիկ էին կտկտում արագիլները:





Մ. ԿՈՐՅՈՒՆ

## ՄԻՆԱԴԻՐ ԱՆԳՐԱԳԵՏԸ

Հանգիստ նստել է նա պատշգամբում,
Մեծին ճարպկորեն մասին է խոսում,
Ու ուզում ասել, որ մինչ իր կյանքին
Մարդ մնա է դատարանում մի կին։

## ԾՈՒՅԼ ԱՇԱԿԵՐՏԻ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Մեր դպրոցը կառուցվող խմբերին դեռ տեսնեմ.
Առանց փորր ինչ բաշխելու նրան դրոշ ես առնեմ.
Մեր դպրոցում կառուցեն մի աշխարհի կարգին,
Որ նստած տեղս ինձ տանի դասարանից։



Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (պատասխանատու խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՁՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—83, 2—59—06։

ՎՖ 04508. Պատվեր 1243։ Տպաքանակ՝ 7000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5 IX 1960 թ.։ ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։

Գինը 2 ռ.




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ

# Խաղեր



## ԳՐԱԿԱՆ-ԽԱՂ

Գրական այս խաղը շատ հարմար է կազմակերպել պիոներական հավաքույթների, բարձր դասարանցիների հանգստի երեկոների ու կառնավալների ժամանակ:

Խաղը կազմակերպելու համար անհրաժեշտ է պատրաստել 45 թերթիկ, 15 թերթիկի վրա գրել 15 գրողի անուն, 15 թերթիկի վրա՝ նրանց գրվածքի, 15 թերթիկի վրա էլ այդ գրվածքների հերոսների անունները:

Խաղացողները թերթիկները փակցնում են իրենց կրծքին և երեկոյի մյուս մասնակիցների հետ սկսում են պարել, զվարճանալ: Մեկ էլ անսպասելի կերպով հնչում է սուլիչի ձայնը, դադարում է նվագը, և ահա գրքի և նրա հերոսի անունը կրող պիոներները պետք է գտնեն հեղինակին:

Ո՛ր «գիրքը» և նրա «հերոսը» շուտ գտան հեղինակին, երեքով վազում ու կանգնում են խաղի ղեկավարի մոտ և գրավում առաջին տեղը: Այնուհետև, ովքեր գտնում են հեղինակին, վազում ու կանգնում են նրանց կողքը: Այստեղ պարզ է դառնում, թե ո՛վ է աշխույժ, ժիր, ուշադիր և որերորդ տեղը գրավեց: Երբ բոլորը գտել են իրենց հեղինակին, ահա այդ ժամանակ սկսվում է շքերթը: Նվագի տակ քայլում է գրողը, նրա հետևից՝ «գիրքը» և «հերոսը»:

Այս խաղի ժամանակ երբեմն կարելի է վերցնել նույն գրողի 2 գիրք, 2 հերոս, կամ մի գիրք իր մի քանի նշանավոր գործող անձերով: Խաղացողների թիվը սահմանափակ չէ: Կարելի է խաղալ նույնիսկ 150 հոգով: Խաղի ժամանակ պետք է հաշվի առնել երեխաների հասակը և ընտրել նրանց ծանոթ գրողներ և գրքեր:




Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

## ՈՐՍՈՐԴԻ ՑԱՆՑԸ

—Մինչև էքսկուրսիա գնալը բավական ժամանակ կա, եկեք մի խաղ խաղանք,— ասաց հնարամիտ Վազգենը:

Մենք սիրով համաձայնեցինք:

Վազգենի պահանջով 5 զույգ պիոներ բռնեցին միմյանց ձեռքերը, կանգնեցին այնպես, որ մի պիոները մեջքով դեպի շրջանի կենտրոնը լինի, մյուսը՝ մեջքով դեպի դուրս: Ամեն մի զույգը իրարից հեռու 3—4 քայլ:

Ապա մեկ շարքով շրջանաձև շարվեցին ջոկատի մնացած պիոներները:

Այժմ, երբ ես կհրահանգեմ քայլով մա՛րշ,— ասաց Վազգենը,— սկսում եք քայլել և անցնում եք 5 զույգ պիոներների ձեռքերի տակով: Քայլում եք նվագի տակ: Եղեք շատ ուշադիր, երբ հանկարծ նվագը կըտըրվեց, այդ պահին ձեռքերդ իջեցնում եք ցած, և ձեզանից ովքեր մնացին նրանց արանքում, նրանք դուրս են գալիս, բռնում միմյանց ձեռքերը և դառնում «որսորդի ցանց»: Եվ այսպես շարունակվում է խաղը: Ով մնաց ամենավերջը, չընկավ «որսորդի ցանցը», նա կլինի խաղի հաղթողը:

Մենք կատարեցինք խաղը և շատ գոհ մնացինք, դո՛ւք էլ խաղացեք, երեխաներ:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

2 ռ.

# ԳԻՇԵՐԱՅԻՆ ԱՐՇԱՎ



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ






















